ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՂԷ.

# ՆԻՒԹԵՐ Կ. ՊՈԼՍՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ԳՐԵՑ

ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1965

# MATERIALIEN ZUR GESCHICHTE DER ARMENIER IN KONSTANTINOPEL

VON

HAIG BERBERIAN

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1965

# ՆԻՒԹԵՐ Կ. ՊՈԼՍՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ԳՐԵՑ

ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1965

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ներկայ հատորին մէջ ամփոփուած յօդուածները լոյս տեսած են ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅի մէջ, 1962—1964 տարիներու ընթացքին, հետեւեալ կարգով․

1․ Իսթանպուլի հայ բնակչութիւնը քաղաքին գրաւումէն մինչեւ Ֆաթիհ Մեհմետ Բ․ի մահը (Մայիս—Օգոստոս եւ Սեպտեմբեր—Դեկտեմբեր 1962, էջ 213—227 եւ 405-423)։

2․ Կ․ Պոլսոյ հայ պատրիարքներու գաւազանագիրքը ըստ Մաղաքիա դպիր Ճէվահիրճեանի (Յուլիս—Սեպտեմբեր 1963, էջ 325—340)։

3․ Կոստանդնուպոլսոյ հայ պատրիարքներու երրորդ անտիպ ցուցակ մը (Յունուար—Մարտ 1964, էջ 1-6)։

4․ Կ․ Պոլսոյ հայ պատրիարքութեան հիմնարկութիւնը (Յուլիս—Սեպտեմբեր եւ Հոկտեմբեր—Դեկտեմբեր 1964, էջ 337—350 եւ 497—510)։

Այս կարգը ցոյց կու տայ թէ յօդուածները պատրաստուած չեն կանխորոշ ծրագրի մը համաձայն, այլ ըստ պատեհութեան։ Եթէ հեղինակը սկզբնապէս մտադիր եղած

ըլլար Կ. Պոլսոյ հայ պատրիարքութեան ժա-
գումին պատմութիւնը ուսումնասիրել, վեր-
ջին գլուխն է որ ամէնէն առաջ պէտք էր
հրատարակուիլ: Տրամաբանական կարգը կը
պահանջէ, հետեւաբար, նախ կարդալ վերջին
եւ յետոյ առաջին գլուխը, եւ կամ առաջի-
նէն ետք վերջինը: Պատրիարքական գաւա-
զանագիրքերը պատմութեան սովորական ըն-
թերցողին համար շահեկանութիւն մը չեն
ներկայացներ, սակայն կը ծառայեն իբրեւ
փաստաթուղթ: Հրատարակելով այս գաւա-
զանագիրքերը, հեղինակը կը յուսայ որ ու-
րիշներ ալ հետզհետէ երեւան կը հանուին
ձեռագրական հաւաքածոներէն եւ կարելի
կ՚ըլլայ Կ. Պոլսոյ հայ պատրիարքներուն ժա-
մանակագրութիւնը ըստ կարելւոյն ճշտել
վերջնականապէս:

# ԻՍԹԱՆՊՈՒԼԻ ՀԱՅ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ
# ՔԱՂԱՔԻՆ ԳՐԱՒՈՒՄԷՆ
## ՄԻՆՉԵՒ
# ՖԱԹԻՀ ՄԵՀՄԵՏ Բ.Ի ՄԱՀԸ
# 1453—1481

# ԱՂԲԻՒՐՆԵՐ ԵՒ ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*ԱԲՐԱՀԱՄ ԱՆԿԻՒՐԱՑԻ — Ողբ ի վերայ առման Կոստանդնուպօլսոյ* (Հր. Յ. Ա. Անասեան, Հայկական Աղբիւրներ Բիւզանդիայի անկման մասին, էջ 35—55):

ANGIOELLO — *Histoire des Ottomans et des Persans*. 1ère édit. annotée par Jean Reinhard. Buenos Aires. (s. d.).

AP — Asikpasaoglu Ahmed Aşıkı. *Tevarih-i Al-i* Osman. *In* Osmanli Tarihleri, Naşiri Çiftcioğlu N. Atsız.

AYVERDI — Ekrem Hakki AYVERDI. *Fatih Devri sonlarinda Istanbul Mahalleleri, şehrin Iskânı ve nüfusu*. Ankara, 1858.

BABINGER — Franz BABINGER. *Mahomet II Le Conquérant et son temps*. 1432-1481. Trad. H. E. Del Medico. Paris, 1954.

CAFER — CAFER ÇELEBI. *Mahruse-i-Istanbul Fethnamesi*. Supplement de OTEM, IV (1331).

CRIT — CRITOBOULOS. *Vie de Mahomet II*. Trad. Déthier (Monum. Hung. His.-Script. XXI, 2ème partie).

DONADO DA LEZZE — *Historia turchesca* (1300-1514). Publicata adnotata, impreunâ cuo intrucere de Dr. I. Ursu. Bucaresti, 1909.

GRECU — DUCAS. *Istoria critica* de Vasile Grecu. Bucareşti, 1958.

DUKAS — *Bizans tarihi*. Ceviren Vl. Mirmiroğlu. Istanbul, 1956.

DURSUN — DURSUN BEY. *Tarih-i Ebu'l Feth*. (Supp. de OTEM. 1330-1332).

HALIL INALCIK — «Mehmed II» (IA).

HIERAX — *Threnos, c'est-à-dire Complainte ou Histoire de l'Empire des Turcs*, composée vers 1597. (Mon. Hung. Hist., XXI, 2ème partie, p. 269-421).

IA — *Islam Ansiklopedisi*. Istanbul.

IBN KEMAL — *Tevârih-i Al-i Osman*. VII. Defter. Hazirlayan Dr. Serafettin Turan. Ankara, 1957.

KAROL — KRITOVOULOS. *Tarih-i Sultan Muhammed hani sani*. Mütercimi Karolodi. (Supp. OTEM, 1328-1330).

NEŞ — NEŞRI. *Kitâb-i cihannüma*. II. cilt. Ankara, 1957.

RIGGS — KRITOVOULOS. *History of Mehmet the Conqueror*. Translated from the Greek by Charles T. Riggs. (Princeton University Press, 1954).

SCHNEIDER — Alfonso Maria SCHNEIDER «Die Bevölkerung Konstantinopels im XV. Jahrhundert (Nachrichten d. Ak. d. Wiss. in Göttingen, Phil.-hist. Kl., Jahrgang 1949, Nr. 9, S. 233-244). — Belleten, No. 61.

ŞIKÂRI — ŞIKÂRI'nin *Karaman oğullari tarihi*. Konya, 1946.

SPHRANTZES Georgios — *Die letzten Tage von Konstantinopel*. Übersetzt, eingeleitet und erklärt von Endre von Ivanka. Graz, 1954.

TEKINDAĞ — M. C. Şehâbeddin TEKINDAG. «Istanbul» (I. A.), «Mehmed Paşa Rum» (I.A.):

TTEM — Türk Tarih encümeni Mecmuasi.

ZINKEISEN J. W., *Geschichte des osmanischen Reiches*. Hamburg, 1840—1868.

## Ա.

*Մեր մէջ ընդհանրապէս տարածուած համոզում մըն է թէ սուլթան Մեհմետ Բ. Ֆաթիհ Կ. Պոլիսը գրաւելէն ետք* քաղաքին յոյն բնակչութիւնը հակակշռելու համար *Փոքր Ասիոյ օսմանեան տիրապետութեան ենթակայ նահանգներէն Պոլիս փոխադրած է ստուարաթիւ Հայեր: Այս համոզումը իբրեւ պատմական ճշմարտութիւն արձագանգ գտած է նոյն իսկ օտար լեզուներով գրուած Հայոց պատմութիւններու մէջ:*

*Ահաւասիկ քանի մը օրինակ այս «պատմական» դաստատումին:*

1. Յ. Ս. Անասեան, Հայկական աղբիւրները Բիւզանդիայի մասին (*Երեւան*, 1957, *էջ* 59, *ծան.* 267–272 *տողերուն*). «*Կ. Պոլսի անկումից յետոյ Թուրքերն իրենց իշխանութեան այլ վայրերից մեծ թւով ոչ-յոյն հպատակներ բռնի տեղափոխեցին այնտեղ*, յունական ազդեցութիւնը հակակշռելու համար: Այս նպատակով Կ. Պոլիս բերուած հայ գաղթականների առաջին ներկայացուցիչները են եղել» *Անկիւրայէն բերուած չորս Հայերը, որ յիշած է Աբրահամ Անկիւրացի:*

2· Մ· ՕՐՄԱՆԵԱՆ, Հայոց Եկեղեցին (Կ· Պ·, 1911, էջ 102)· «*Աշխարհակալ Թագաւորը··· Յոյներուն կացութիւնը ճշդելէ ետք մտածեց* անոնց դիմացը *ուրիշ քրիստոնէական տարր մը կազմակերպել, տարր մը որ աւելի կապուած էր իրեն տէրութեան շահերուն*: Բազմաթիւ հայ գաղթականութիւն մը փոխադրեց Կոստանդնուպոլիս քաղաքը...» *Նոյնը*՝ *L'Eglise Arménienne* [2] p. 60):

3· *JACQUES DE MORGAN. Histoire du peuple arménien,* (Paris, 1919, p. 290). «*Մեհմէտ Բ, Կ· Պոլսոյ գրաւումէն ետք*, հակակշռելու համար Յոյներուն ազդեցութիւնը, *Փոքր Ասիոյ Հայերը հրաւիրեց գալ հաստատուիլ Ոսկեղջիւրի մօտերը, ուր արդէն իրենց հայրենակիցներուն ստուարաթիւ մէկ գաղութը կ'ապրէր*»:

4· *H. PASTERMADJIAN, Histoire de l'Arménie* (Paris, 1949, p. 290). «*Բայց սուլթան Մեհմէտ Բ· Ֆաթիհ ուզեց նաեւ* հակադրել յոյն պատրիարքին, անոր զօրութիւնը հակակշռելու համար, *ուրիշ քրիստոնեայ տարր մը, զոր ամէնէն աւելի կապուած կը նկատէր իր շահերուն, այսինքն Հայերը*»: (*Աղբիւրը Օրմանեանի* Հայոց Եկեղեցին *է*):

5· *H. THOROSSIAN. Histoire de l'Arménie et du peuple arménien* (Paris, 1957, p. 125–126)· *Յիշելէ ետք Պրուսայի Յովակիմ եպիսկոպոսին* 1461*ին իբրեւ Թուրքիոյ Հայ համայնքներուն պետ կարգուիլը պատրիարք*

տիտղոսով, կը շարունակէ. «Ֆաթիհ այսպէս կրկնակ նպատակ մը կը հետապնդէր, այն է թէ՛ օգտուիլ Հայոց առեւտրական եւ ճարտարարուեստական փորձառութենէն իր նոր մայրաքաղաքին մէջ եւ թէ աւելցնել անոր բնակչութեան ոչ-յոյն տարրերը հակակշռելու համար իր նոր հպատակներուն՝ Բիւզանդացիներուն յոյժ ջախջախիչ մեծամասնութիւնը[1]»։

Այս հաւաստումին պատմական աղբիւրը անծանօթ է։ Զամչեան, որուն Հայոց Պատմութիւնը գլխաւոր աղբիւրը եղած է օսմանեան գրաւումէն ետք Պոլսոյ Հայոց պատմութեան սկզբնական շրջանին, միմիայն կը պատմէ թէ ըստ իրեն Կ. Պոլսոյ առաջին հայ պատրիարքին՝ Յովակիմ եպիսկոպոսին հետ 1461ին Պոլիս գաղթած կամ տեղափոխուած են «քանի մը երեւելի տուներ (ըստ ոմանց վեց տուն), ինչպէս նաեւ Անկիւրայէն չորս տուն։ Ոմանց բնակարաններ տուաւ (սուլթանը) քաղաքին եւ ոմանց՝ Ղալաթիոյ մէջ, ուր արդէն բազում Հայեր կային[2]»։

Զամչեանի հաղորդած տեղեկութեանց մէկ մասը հիմնուած է Մաղաքիա Դպիր Ճէվահիրճիի Կ. Պոլսոյ Հայ Պատրիարքներուն ցանկին վրայ, իսկ մէկ մասին աղբիւրը անծանօթ է։ Սակայն, ամէն պա-

---

[1] Բոլոր ստորագծումները իմս են։ Հ. Պ.։

[2] Գ., 500։

բազայի մէջ, իր տեղեկութիւնները չեն պարունակեր ոեւէ բառ որ արդարացնէ վերոյիշեալ պատմաբաններուն եւ անոնց նմաններուն հաւաստումները: Իսթանպուլի հայ գաղութին պատմութեան եւ Հայոց Պատրիարքութեան հաստատման թուականին տեսակէտով, անհրաժեշտ է, ուրեմն, դիմել ժամանակակից աղբիւրներուն, ստուգելու համար վերոյիշեալ հաւաստումին ճշտութիւնը:

## Բ.

Կոստանդինուպոլիս գրաւուեցաւ 29 մայիս 1453ին: Բիւզանդացի ռազմիկներուն եւ քաղաքին բնակիչներուն մէկ մասը սպաննուեցաւ, իսկ մնացեալ մասը գերի վարուեցաւ: Քաղաքը երեք օր աւարառութեան ենթարկուեցաւ, բայց չորրորդ օրը զինուորներուն արգիլուեցաւ քաղաք մտնել:

Բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքը դատարկուած էր իր բնակչութենէն: Կոտորածէ եւ գերութենէ ազատած էին միայն Պալաթի Հրեաները եւ անոնք որ ծակամուտ եղած էին կամ յաջողած՝ Կալաթա ապաստանիլ:

Գրաւման հինգերորդ օրը Կալաթայի ճենովացիները, որ քաղաքին վրայ յարձակումը սկսելէ առաջ դաշնագիր մը կնքած էին Մեհմետ Բ.ի հետ, անոր յանձնեցին քաղաքը:

Յաղթական սուլթանին առաջին հրամանները եղան պարիսպները նորոգել եւ քաղաքը շէնցնել սպաննուած եւ գերուած բնակիչներուն տեղ նոր մարդիկ բերելով։

21 յունիս 1453ին Էտիրնէ մեկնելէ առաջ, պարիսպները նորոգելու եւ քաղաքը բնակիչ բերելու պաշտօնը յանձնեց Պուրսայի նախկին սուպաշը Գարըշտըրան Սիւլէյման պէյի[3] եւ դատը անուանեց Խըտըր պէյ չէլէպին[4]։

Գրաւումէն առաջ Բիւզանդիոնի բնակիչներուն թիւին մասին ստոյգ տեղեկութիւններ կը պակսին, բայց կ՚ենթադրուի թէ 50–70000ի միջեւ էր[5]։ Մեհմետ Բ. նշանաւոր մարդոց եւ իր անձնապահ զօրավարներուն նուիրեց բիւզանդացի երեւելիներուն բնա-

---

[3] Crit., 140; Karol. 90; Riggs, 85; «եպարքոս»; Cafer, 24՝ «սուպաշը», Dursun 59՝ «վալի», AP, 193՝ «սուպաշը», Neş., II, 709՝ «սուպաշը», Աբրահամ Անկիւրացի, 48 ա. 250՝ «իշխան»։

[4] Tekindağ, 1200b, Աբրահամ Անկիւրացի, 48 ա. 252՝ «դարադատին» (տպ. Ղարադատին)։

[5] Crit., 84՝ 50,000, ըստ Քիոսի Լէոնարտոս եպս.ին Ֆաթիհ 60,000 հոգի գերութեան մատնեց։ Քաղաքին պաշարման ատեն սպաննեալներուն (այր, կին, մանուկ, օտարական) թիւը՝ իբր 4000, գերիներուն թիւը քիչ մը աւելի քան 50.000, որոնց 500ը՝ ամբողջ բանակէն (Crit., 84, Riggs 76)։ Եթէ 5–6000 հոգի ալ պահուըտած կամ փախած ըլլան, քաղաքին բնակիչներուն ամբողջական թիւը 60.000ի շուրջ պէտք է եղած ըլլայ (Belleten, no. 62, s. 39; A. Andréadès, «De la population de Constantinoples (*sic*) sous les empereurs byzantins» (*Metron*, I (1910), p. 41); Ayverdi, 70)։

կարանները, ինչպէս նաեւ քաղաքին մէջ պարտէզներ, դաշտեր եւ այգիներ: Ոմանց ալ սքանչելի աղօթավայրեր տրամադրեց իբրեւ բնակարան: Իրեն բաժին ինկած գերիները, իրենց կիներով եւ զաւակներով, բնակեցուց նաւահանգիստին եզերքը եւ զանոնք որոշ ատեն մը տուրքէ զերծ կացոյց: Միւս բոլոր գերիներուն ալ բնակարան տուաւ եւ յայտարարեց թէ անոնք որ փըրկագին վճարած էին կամ կը խոստանային վճարել իրենց տէրերուն՝ պայմանաժամ մը որոշելով, կրնային քաղաքը բնակիլ: Անոնք ալ հարկազերծ ըրաւ եւ անոնց տուներ տըւաւ, ըլլա՛յ իրենց ըլլա՛յ ուրիշներու տուները:[6] Գերիները գոհացուցիչ օրավարձքով աշխատցուց պարիսպներուն նորոգութեան համար, կարելիութիւն ընծայելով որ իրենց փրկագինը վճարելով ազատ արձակուին[7]:

Մեհմետ Բ. յայտարարեց թէ ամէն մարդ ազատ էր իր թաքստոցէն դուրս ելլելու եւ իր կրօնքը դաւանելու: Նոյնպէս, անոնք որ եւրոպական թաղամասը ապաստանած էին ազատ էին քաղաք վերադառնալու եւ իրենց բնակարաններուն տէր ըլլալու:

Կալաթայի գրաւումէն ետք, սուլթանը վերադարձի համար երեք ամսուան պայմանաժամ տուաւ անոնց որ մեկնած էին: Եթէ չվերադառնային, յարքունիս պիտի

---

[6] Crit., 137; Karol., 88; Riggs, 83; Dukas, 196; Grecu, 397:

[7] Crit., 152; Karol., 93; Riggs, 93:

գրաւուէին անոնց բնակարաններն ու ինչքերը որոնք ցուցակագրուած էին: Յետոյ հրամայեց մինչեւ սեպտեմբեր արեւելեան եւ արեւմտեան նահանգներէն 5000 ընտանիք Իսթանպուլ փոխադրել: Անոնք որ փոխադրութեան համար արձանագրուելէ ետք պիտի մերժէին մեկնիլ մահուան պիտի դատապարտուէին, իսկ անոնք որ յօժարակամ պիտի գային պետական գանձարանին փոխանցուած բիւզանդական չէնքերը, արտերը եւ պարտէզները պիտի ստանային առանց փոխարինութեան[8]: Նորեկները Սիւլեյման պէյի միջոցաւ սուլթանին դիմելով միւլքնամէ պիտի ստանային, այսինքն իրենց կալուածին բացարձակ տէրը պիտի ըլլային[9]: Երեք տարի ալ զերծ պիտի ըլլային տուրքէ[10]: Ֆաթիհ Մեհմետ Էտիրնէ մեկնելէ առաջ միայն 1500 ենիչերի թողուց քաղաքը[11]:

Գրաւման կամ յաջորդ տարին, Իսթանպուլ հաստատուած նոր բնակիչներուն մա-

---

[8] Dursum, 60; Cafer, 24; Dukas, 193; Grecu, 392; AP., 193; Angiolello, 44: — 5000 ընտանիքի փոխադրութեան հրամանը արձակած է Սիւլէյման Չելէպի (Tekindağ, 1200 b): AP կ'ըսէ թէ սուլթանը բոլոր սահմանները մարդ ղրկեց եւ փախաքողները հրաւիրեց Իսթանպուլ:

[9]:Cafer, 24; AP. 193:

[10] Angiolello, 44:

[11] Angelo Joes. Comm.ի կողմէ 23 յունիս 1653ին Ճենովայի հանրապետութեան ուղղուած նամակ (յիշուած Zinkeisen, GOR., II, 5):

սին մանրամասն տեղեկութիւններ կը պակսին: Միայն կը յիշուի թէ Փանթոքրաթորի վանքը (յետոյ Զեյրեք ճամի) հաստատուած էին հաղուստ ներկող եւ մաքրող մահմետականներ, որոնք վանքին եկեղեցիին մէջ թէ՛ իրենց արհեստը կը կիրարկէին եւ թէ կը բնակէին: Մանկանոնի վանքին մէջ ալ տերվիշներ հաստատուած էին, իսկ ուրիշ վանքերու մէջ ալ թուրք ընտանիքներ[12]: Բնականաբար, միայն անոնք չէին Իսթանպուլ հաստատուած մահմետականները:

Քաղաքին վերաշինութեան, ինչպէս նաեւ տնտեսական, առեւտրական եւ իմացական կեանքին վերակենդանացման համար սուլթանին հրամանը գոհացուցիչ արդիւնքի մը չյանգեցաւ: Վաճառականները, առեւտրականները, արհեստաւորներն ու արուեստագէտները, ինչպէս նաեւ գործաւորները չփութացին կամաւորապէս լքել իրենց բնակարանները, զբաղումները եւ ծննդավայրը եւ Իսթանպուլ մեկնիլ:

Սուլթանը, դժգոհ այս կացութենէն, 1454ի ձմեռը ստիպուեցաւ Պուրսա երթալ եւ խիստ միջոցներու դիմել: Պաշտօնանկ ըրաւ բազմաթիւ մեծ ու փոքր պաշտօնատարներ եւ Իսթանպուլ փոխադրել տուաւ վաճառականներ եւ արհեստաւորներ: Ասոնց վերաբերեալ վաւերագիրներ կան Պուրսայի

---

12 Dukas, 196; Grecu, 397:

չերիի դատարանին արձանագրութեանց մէջ[13]:

Յոյներուն վստահութիւն ներշնչելու եւ յոյն բնակչութեան թիւը աւելցնելու նպատակով, եւ թերեւս հետեւելով իր յոյն խորհրդականներուն խորհուրդներուն[14], 1454ին Ֆաթիհ օրթոտոքս պատրիարքութեան թափուր աթոռը նոր գահակալով մը օժտեց, մեծ հանդիսաւորութեամբ պատրիարք անուանելով համբաւաւոր Եորկիոս Սխոլարիոս անուն ուսեալ աշխարհական մը, որ իբրեւ գերի վաճառուած էր Էտիրնէ եւ որ մէկ օրուան մէջ ստացաւ եկեղեցական բոլոր կարգերը: Եորկիոս Սխոլարիոս ստացաւ Գեննատիոս անունը: Ֆաթիհ զայն «քրիստոնեաներուն (Յոյներուն) պատրիարք եւ տեսփոթ կարգեց եւ եկեղեցական գործերը անոր յանձնեց: Շնորհուած առանձնաշնորհումները հինէն ի վեր կայսրերուն կողմէ պատրիարքներուն տրուած առանձնաշնորհներէն պակաս չէին[15]»:

---

[13] Halil Inalcik, «Mehmed II» (IA, 75. cüz, 519 b):

[14] Ըստ Hieraxի, 419—420. Ֆաթիհ Յոյները սիրաշահելու համար ամէն միջոցի կը դիմէր: Իրեն խորհուրդ տրուեցաւ պատրիարք մը անուանել, որպէս զի կառավարէ յունական եկեղեցիները եւ յոյն կղերը:

[15] Crit., 153—154; Karol, 93; Riggs, 94: — Պատրիարքին անուանման թուականին վերաբերեալ տեղեկութիւնները իրարու համաձայն չեն: Հաւանական թուականն է 1454ի գարունը (Const. G. Pa-

Ֆաթիհ խախամապետ անուանեց Մոշէ Քափսալի անուն երկիւղած Հրեայ մը: Գրաւման յաջորդ տարին իսկ (1454), Իսաաք Սարֆաթի անուն Հրեայ մը Հռենոսական Նահանգներուն, Սուաբիայի, Սթիւրիայի, Մորավայի եւ Հունգարիայի Հրեաներուն խանդավառ նամակներ ուղղուած էր եւ օսմանեան կայսրութիւնը ներկայացուցած էր իբրեւ դրախտ մը Հրեաներուն համար: Մեծ թիւով Հրեաներ, քրիստոնեայ տէրութեանց եւ ժողովուրդներուն կեղեքումներէն ու հալածանքներէն ազատելու համար, զունդագունդ գաղթեցին Թուրքիա[16], եւ Ֆաթիհի օրով ո՛չ միայն վայելեցին բարօրութիւն, այլ եւ ոմանք կոչուեցան բարձր պաշտօններու, նախանձը գրգռելով մահմետականներուն:

---

padopoulou, *Les Privilèges du Patriarcat oecumenique, Paris 1924*, 20, n. 5):

[16] Babinger, 144: Angiolello կը գրէ թէ կամաւորապէս Իսթանպուլ եկողներուն թիւը բաւարար չհամարուեցաւ: Սուլթանը, տեսնելով որ իր նպատակին պիտի չկրնայ հասնիլ, հրամայեց որ իր կայսրութեան արեւելեան եւ արեւմտեան մասերէն բոլոր Հրեաները, իրենց կիներուն եւ զաւակներուն հետ, Իսթանպուլ փոխադրուին (էջ 46):

Իսկ շարունակութեան մէջ կ՝ըսէ թէ փոխադրուողներուն նախկին բնակավայրերուն անուններով յորջորջուեցան այն վայրերը որ անոնց բնակութեան յատկացուեցան Իսթանպուլի մէջ: Այս տեղեկութիւնը, որ ճիշտ է, կը վերաբերի ո՛չ միայն Հրեաներուն, այլ փոխադրուածներէն մեծ մասին: Angiolello յայտնօրէն համատարաբար խօսած է բնադաղթներուն մասին:

Կամաւոր գաղթի հրաւէրին ձախողանքը սուլթանը ստիպեց դիմել բռնագաղթի քաղաքականութեան: Բռնագաղթը (սուրկուն-սիւրկիւն) [17] միակ միջոցն էր որով կարելի էր Իսթանպուլը օսմանեան կայսրութեան մայրաքաղաքը ըլլալու վիճակին վերածել: Ֆաթիհ Իսթանպուլ եւ քաղաքին շրջակայքը փոխադրել տուաւ ո՛չ միայն իր իշխանութեան ենթակայ քաղաքներէն օգտակար տարրեր, անհատապէս կամ խմբովին, այլ եւ նոր նուաճած քաղաքներուն եւ երկիրներուն բնակչութիւնը՝ մասամբ կամ ամբողջովին: Նոյն քաղաքականութեան հետեւեցան իր յաջորդներն ալ, աւելի լայն սահմաններու մէջ, կայսրութեան եւրոպական մասէն Փոքր Ասիա եւ Փոքր Ասիայէն Ռումելի եւ աւելի հեռուները տեղափոխելով մարդկային ստուարաթիւ խումբեր, առանց յիշելու մայրաքաղաք փոխադրուածները:

Բռնագաղթերուն նպատակն էր թէ՛ մայրաքաղաքը շէնցնել եւ թէ կայսրութեան զանազան մասերուն մէջ քաղաքականօրէն վտանգաւոր տարրերը հեռացնել եւ նոր գրաւուած վայրերուն մէջ անդորրութիւնը ապահովել: Միւս կողմէ, բնակչութեանց տեղափոխութեամբ, քրիստոնեաներէ բնակ-

---

17 Այս բառը գործածուած է թէ հա՛յ (տես վարը՝ ձեռագրական յիշատակարանները) եւ թէ օտար աղբիւրներու մէջ (Angiolello : *surgun*; Sphrantzes, 308, *surgun*):

ուած երկիրներուն մէջ կը հաստատուէր մահմետական տարր մը[18]։

Համմեր (Ֆրանս. Թարգմ., Գ, 212) կ՚ըսէ թէ Ֆաթիհ, Պոլսոյ բնակչութիւնը գրեթէ բնաջնջին ըլլալէ ետք, գործադրեց բոլորովին նորօրինակ դրութիւն մը անոր բնակիչներուն թիւը աւելցնելու համար, եւ Արշակ Ալպօյաճեան ալ (Պատմութիւն Հայ Կեսարիոյ, Ա, 583) իւրացուցած է այս կարծիքը։ Սակայն բռնագաղթի քաղաքականութիւնը շատ յաճախ կիրարկուած է աշխարհակալներու կողմէ։ Օսմանցիներուն անմիջական նախորդները՝ Բիւզանդիոնի կայսրերը նոյն քաղաքականութեան հետեւած են ամէն անգամ որ հարկ տեսած են անոր եւ կարելի նկատած են զայն[19]։ Բայց հայ պատմագիրը յիշողութեան զարմացուցիչ վրէպ մը ունեցած պէտք է ըլլայ մոռնալու համար նոյնիսկ Տիգրան Բ.ի կատարած բռնի տեղահանութիւնները։ Պոլսոյ դատարկացումը ո՛չ թէ քաղաքականութեան մը, այլ պատերազմական դժնդակ գործողութեանց հետեւանքն էր։

---

18 Ö. L. Barkan, «Osmanlı Imperatorluğunda bir iskân ve Kolonizasion metodu olarak sürgünler» (Istanbul Üniversitesi Iktisat Fakültesi Mecmuasi. Istanbul, Cild. XIII ve XV), s. 19:

19 Բռնագաղթի բիւզանդական քաղաքականութեան մասին տես Peter Charanis, «The Transfer of Population as Policy in the Byzantine Empire» (*Comparative Studies in Society and History*. The Hague, III, 2. January 1961):

Ֆաթիհի օրով կատարուած առաջին բռնագաղթներուն ժամանակագրութիւնը բացարձակ ստուգութեամբ որոշ չէ. սակայն այս պարագան կարեւորութենէ զուրկ է այս էջերուն մէջ քննուած խնդրին տեսակէտով, որովհետեւ եթէ Ֆաթիհ «բիւզանդական ջախջախիչ մեծամասնութեան դէմ» (Հրանդ Թորոսեան) ստուարաթիւ Հայեր փոխադրած է Իսթանպուլ, փոխադրութեան ճիշտ թուականներուն միջեւ քանի մը տարուան տարբերութիւնը կարեւորութենէ զուրկ է:

Ամէն պարագայի մէջ, հաւանական կը թուի թէ բռնագաղթի հրամանը տրուած է 1453ին ուղղուած կամաւոր գաղթի հրաւէրին անյաջող արդիւնքէն քիչ ետք: Քրիթովուլոս կը պատմէ թէ Ֆաթիհ 1454ին Էտիրնէէն Իսթանպուլ վերադարձին, «գաւառներէն ժողովուրդ բերելու համար Փերմաններ եւ հրամաններ արձակեց եւ, ըստ այսմ, բազմաթիւ քրիստոնեայ, թուրք եւ նոյն իսկ հրեայ ընտանիքներ Իսթանպուլ փոխադրել տուաւ»[20]: Անճոլելլո կ'ըսէ թէ կամաւոր գաղթի հրաւէրին պատասխանեցին Յոնաստանէն եւ ուրիշ վայրերէ մարդիկ, բայց անոնց թիւը քիչ էր իսկ քաղաքը՝ մեծ: Սուլթանը հրամայեց իր կայսրութեան բոլոր Հրեաները փոխադրել[21]:

Տուրսուն Պէյ Իսթանպուլի վերաշինութեան վերաբերեալ տեղեկութիւնները կը

---

[20] Crit., 151; Karol., 92; Riggs, 93:

[21] Angiolello, 44:

պատմէ առանց տարբերիլ։ Կ՚ըսէ թէ տուներ շնորհելու սուլթանական խոստումէն ետք ամէն կողմէ հարուստներ եւ աղքատներ եկան, բայց հարուստ վաճառականները իսկզբան չեկան։ Սուլթանը հրամայեց ամէն քաղաքէ որոշ թիւով վաճառականներ ղրկել, եւ իրենց դիրքին համապատասխան բնակարաններ շնորհեց անոնց։ Այս վաճառականներուն համար պեղեսթեններ, շուկաներ, ինչպէս նաեւ երթեւեկողներուն համար կարաւանսերայներ շինուեցան։ Երբ այս կարգադրութեանց հետեւանքով բնակչութեան թիւը աւելցաւ, այն ատեն սուլթանը հրամայեց որ բնակարանները մուգաթաայի[22] ենթարկուին, որովհետեւ միայն շէնքերն էին որ իբրեւ միւլք տրուած էին, իսկ հողը վագֆ էր։ Այդ ատեն շատ փոփոխութիւններ տեղի ունեցան։ Օրինակի համար, ով որ ի վիճակի չէր իր բնակած շէնքին համար մուգաթաա վճարել, իր բնակարանը լքելով իր նիւթական վիճակին համապատասխան բնակարան առաւ։ Այդ ատեն սուլթանը մուգաթաան ջնջեց[23]։

Աշըգփաշազադէ աւելի կենդանի ոճով մը կը պատմէ դէպքերը։ Ըսելէ ետք թէ կամաւոր գաղթի հրաւէրով քաղաքը չշէնցաւ, կը շարունակէ. «Այդ ատեն սուլթանը հրամայեց ամէն նահանգէ թէ՛ հարուստ եւ

---

22 Մուգաթաա բառը Ֆաթիհի օրով «վարձք»ի համապատասխան իմաստ մը ունէր։

23 Dursun, 60—62; Ibn Kemel, 97—98:

թէ աղքատ ընտանիքներ բանի զրկել: Բոլոր նահանգներուն գաւառներուն եւ սուպաշըններուն հրաման ղրկուեցաւ պատուիրակներու միջոցաւ: Ասոնք հրամանին համաձայն շատ մեծ թիւով (միւպալաղա իլէ) ընտանիքներ տեղահան ընելով բերին: Նորեկներուն ալ տուն տրուեցաւ: Այս անգամ քաղաքը շէննալ սկսաւ: Այս մարդոց տրուած տուները մուգաթաայի ենթարկուեցան, ինչ որ ժողովուրդին դժգոհութիւն պատճառեց: «Մեզ մեր միւլքերէն տեղահան ըրիք, մեզ բերիք որ այս անհաւատներուն տուներուն համար վա՞րձ վճարենք» ըսին: Ոմանք իրենց կինը, զաւակները լքելով փախան: Սուլթանը Մեհմետ Գուլա Շահին անուն զօրապետ մը ունէր, որ իր հօրը եւ մեծ հօրը ծառայած եւ վեզիրութիւն ըրած էր: Սուլթանին ըսաւ. «Ո՛վ վեհափառ սուլթանս, հայրդ, մեծ հայրդ այսքան երկիրներ գրաւեցին, ոչ մէկ երկրի մէջ մուգաթաա դրին: Սուլթանիս ալ վայել է որ չդնէ»: Սուլթանը հաճեցաւ անոր խօսքին: Մուգաթաան ջնջեց: Հրամայեց որ ամէն շնորհուած տուն նորէն իբրեւ միւլք տրուի: Յետոյ, շնորհուած ամէն տունի միւլքնամէ տուին: Այս կարգադրութեամբ քաղաքը վերսկսաւ շէննալ: Մզկիթներ շինուիլ սկսան: Ոմանք զավիյէներ, ոմանք չէնքեր շինեցին: Եւ քաղաքը սկսաւ զարգանալ: Յետոյ սուլթանը վեզիր մը ունեցաւ, որ անհաւատի մը որդին էր: Սուլթանին ալ մեծ վստահութիւնը կը վայելէր:

Իսթանպուլի նախկին անհաւատները այս վեզիրին հօրը բարեկամներն էին, անոր դիմեցին եւ ըսին. «Հէ՜յ, ի՞նչ կ'ընես: Այս Թուրքերը այս քաղաքը նորէն չէնցուցին: Դո՞ւն ինչու այս գործին զարկ կու տաս: Հօրդ հայրենիքը եւ մեր ալ հայրենիքը գրաւեցին: Մեր աչքին առջեւ տիրեցին անոր: Դուն սուլթանին մտերիմն ես: Հիմա ջանա որ այս մարդիկը քաղաքը չէնցնելէ հրաժարին եւ, ինչպէս առաջ, քաղաքը նորէն մեր ձեռքը մնայ»: Վեզիրն ալ ըսաւ. «Մուգաթաան, որ նախապէս դրուած էր, նորէն դնել տանք: Ժողովուրդն ալ միւլք չինելէ կը հրաժարի: Քաղաքը այս կերպով նորէն կը սկսի աւերակի վերածուիլ: Ի վերջոյ, նորէն մեր ձեռքը կը մնայ»: Վեզիրը սուլթանը կը համոզէ եւ մուգաթաան կը վերահաստատուի: «Այս վեզիրը Րում Մեհմետ փաշան էր, զոր սուլթանը, յետոյ, չան պէս խեղդել տուաւ: Այս մուգաթաային պատճառաւ ժողովուրդը խուսափեցաւ Իսթանպուլը չէնցնելէ[24]»:

Նեշրի գրեթէ բառ առ բառ կը կրկնէ այս պատմութիւնը, բայց կ'ըսէ թէ Րում Մեհմետ փաշա, նախանձելով որ մահմետականները Իսթանպուլի մէջ առանց փոխարինութեան տունի տէր կ'ըլլան եւ հոն կը հաստատուին, սուլթանը համոզեց մուգաթաա դնել:

---

[24] AP., 193—194:

[25] Neş., II, 710:

Ինչպէս կը տեսնուի, ժամանակակից Թուրք պատմագիրները քանի մը տարուան ընթացքին պատահած դէպքերը համագրաբար եւ ոչ թէ ժամանակագրական կարգով ներկայացուցած են, առանց մանրամասնութեանց: Թէեւ ցեղային որակումներ չեն ըրած, սակայն բացայայտ է թէ իրենք մեծ մասամբ, եթէ ոչ բացառապէս, մահմետական տարրերը նկատի ունեցած են եւ իրենց տեղեկութիւնները կը վերաբերին գրաւման անմիջապէս յաջորդող քանի մը տարիներուն:

Յարաբերաբար շատ աւելի ստոյգ եւ մանրամասն տեղեկութիւններ պահուած են ուրիշ աղբիւրներու մէջ: Այսպէս

ա. 1454—1455ին, Սերպիոյ սահմաններէն 50,000 հոգի քաղաքին շրջակայքը փոխադրուեցան:[26] Ըստ Քրիթոպուլոսի, Սեր, պիոյ պատերազմէն վերադարձին, սուլթանին ամէնէն կարեւոր գործերէն մէկը եղաւ դարձեալ բնակիչ բերել կայսրութեան ասիական եւ եւրոպական մասերէն՝ ամէն ազգէ մարդիկ, բայց մասնաւորաբար Սերպիայէն:[27] Գերիներուն կէսը, որ սուլթանին բաժինն էր, 40,000 ընտանիքէ կը բաղկանար:[28]

բ. 1457ին, սուլթանը նոր բնակիչներ

---

[26] Babinger, 134: Աղբիւրը չէ հրատարակուած:

[27] Crit., 171; Karol., 102—103; Riggs, 104—105:

[28] Dakas, 196; Grecu, 397—398:

փոխադրեց Պոլիս եւ ձեռնարկեց թէ՛ հանրօգուտ շէնքերու շինութեան եւ թէ քաղաքին բարեզարդման։ Եւ ոչ միայն քաղաքը, այլ եւ արուարձանները եւ շրջակայ վայրերը շէնցնելու հոգ տարաւ, փոխադրելով, ոմանք բռնի, Սերպեր, Հունգարացիներ եւ Պուլկարներ։ Սուլթանը անհրաժեշտ նկատեց բնակիչ հաստատել քաղաքին շրջակայքը, ուր հողը ամէն տեսակ բանջարեղէն եւ պտուղ կ'արտադրէր, որով քաղաքին պէտքերը կրնային հոգացուիլ։ Նոյն ատեն, մեծ մասամբ անմարդաբնակ եւ խոպան ընդարձակ հողերը կը մշակուէին եւ, միանգամայն, ուղեւորները անվտանգ կրնային անցնիլ այդ տեղերէն։[29]

գ. 1457—1458ին, Կորնթոսի շրջանէն, «4000է աւելի մանուկ եւ կին Իսթանպուլի շրջակայքը հաստատուեցան։»[30]

դ. 1458ին, Պելոպոնէսի քաղաքներուն գրաւումներէն ետք, սուլթանը քանդել տուաւ քանի մը բերդ, որոնք օգտակար չէին, եւ բնակիչները Իսթանպուլի շրջակայքը բնակեցուց։[31]

ե. 1459ին, ձմեռը Պոլիս վերադառնալէ ետք, Պելոպոնէսի բնակիչներուն մէկ մասը Պոլիս փոխադրուեցաւ։ Ծարպիկ առեւտրականները քաղաքը, իսկ մնացեալ-

---

[29] Karol., 112—113; Riggs, 118—119; Dursun, 67։

[30] Karol., 123։

[31] Karol., 125, Riggs, 136։

ները քաղաքին չուրջը, գիւղերը հաստատ-
ուեցան, եւ որպէս զի տանք կարենան հո-
ղագործութեամբ պարապիլ, սերմնցու, լըծ-
կան եզներ եւ ուրիշ ինչ որ հարկաւոր էր
տրուեցաւ:[32]

Տուրսուն պէյ կը թուի այս վերջին փո-
խադրութեանց ակնարկել երբ կը գրէ թէ
Ֆաթիհ քրիստոնեաներէն գրաւած երկիր-
ներէն բերած գերիները Իսթանպուլի շըր-
ջակայքը հաստատեց եւ գիւղեր ու արտեր
ստեղծեց, որով թափուր հող չմնաց եւ ամէն
կողմ շէնցաւ:[33]

Գ. 1460ի վերջերը Սեւ Ծովուն վրայ
Ամասթրիս (Թրք. Ամասթրա, Ամասթրը)
նաւահանգիստը անձնատուր եղաւ: Բարե-
կեցիկ բնակիչներուն մեծամասնութիւնը Պո-
լիս փոխադրուեցաւ առանց գերութեան վե-
րածուելու:

Ֆաթիհ նոյնպէս Պոլիս փոխադրել
տուաւ իր իշխանութեան ենթակայ Հայերէն
անոնք որ իրենց սեփականութիւններով,
հարստութեամբ, մասնագիտութեամբ եւ
ուրիշ յատկութիւններով առաջնակարգ էին,
ինչպէս նաեւ առեւտրականները, եւ ոչ
միայն Հայերը, այլ եւ նոյն դասակարգի իր
հպատակները:[34]

---

[32] Crit., 227; Karol., 128; Riggs, 139: Մորէայի ամբողջական գրաւումէն ետք փոխադրութեանց մասին՝ Karol., 141, 142; Riggs, 156, 157:

[33] Dursun, 67:

[34] Crit., 227; Karol., 128; Riggs, 140; AP., 203:

Է. 1460ին, Ալպանիոյ պատերազմէն ետք, կայսրութեան թէ՛ արեւելեան եւ թէ արեւմտեան նահանգներուն մէջ յայտարարութիւն ընել տուաւ թէ ամէն անոնք որ Կ. Պոլիսէն մեկնած էին, ըլլա՛յ իբրեւ գերի, ըլլա՛յ իբրեւ գաղթական, գրաւումէն առաջ թէ ետք, եւ ուրիշ քաղաքներ կը բնակէին, արտօնուած էին Պոլիս վերադառնալ: Որովհետեւ շատեր կային տակաւին որ Էտիրնէ, Ֆիլիպէ, Կելիպոլու, Պուրսա եւ ուրիշ քաղաքներ հաստատուած էին, ուսեալ եւ շատ օգտակար մարդիկ, որոնք իրենց ընդունակութեան շնորհիւ կարճ ժամանակի մէջ դիրք շինած եւ հարստացած էին: Սուլթանը, ասոնք ամէնքն ալ Պոլիս փոխադրել տալով, ոմանց տուն շնորհեց, ուրիշներուն տուն շինելու համար հող՝ քաղաքին ոեւէ մասին մէջ, ոմանց ալ ամէն դիւրութիւն ընծայեց: Յոնիոյ Հին եւ Նոր Ֆոչա (Ֆոչէ) քաղաքներուն, ինչպէս նաեւ Թասոս եւ Սամոթրակէ կղզիներուն բնակիչները Պոլիս փոխադրեց:[35]

Ը. 1460ի վերջերը կամ 1461ին, Մորէայէն, միայն Քիփարիսսիայէն, առնուազն 10,000 հոգի Պոլիս փոխադրուեցան:[36]

Թ. 1461ին, Տրապիզոնի գրաւումին

---

Neş., 190: Շնայտէր կը կարծէ թէ ասոնք Հայ էին եւ Սուգու Մանասթըրի շրջակայքը հաստատուեցան: (Belleten, no. 61, s. 215):

[35] Crit., 242; Karol., 135; Riggs, 146:

[36] Babinger, 213:

յաջորդեց քաղաքէն եւ շրջակայքէն մօտաւորապէս 1500 երիտասարդի Պոլիս առաքումը, ուր Կոմնենոս կայսրը, իր ընտանիքը եւ մեծահարուստները ապատօրէն փոխադրուած էին: Ուրիշ բազմաթիւ ընտանիքներ ալ ղրկուեցան:[37]

ժ. 1462ին, Միտիլլի քաղաքին բնակիչներուն մէկ երրորդը եւ ներքնամասին բնակիչները քաղաքին մէկ թաղին մէջ հաստատուեցան: Ոմանք պատրաստ տուներ ստացան, ոմանք տուն շինելու արտօնութիւն եւ ոմանք ալ ինչ որ պէտք էր:[38]

ժա. 1464ին, Արկոսի բոլոր բնակիչները, իրենց կիներով եւ մանուկներով եւ բոլոր գոյքերով ողջ առողջ փոխադրուեցան: Տուներ, այգիներ եւ արտեր ստացան:[39]

ժբ. 1467ին, Սերպիոյ Նովո Պրտո քաղաքին բնակիչներուն մնացեալ մասը Պոլիս փոխադրուեցաւ:[40]

ժգ. 1475ին, Կաֆայէն (Քեֆէ) Լատիններ, Յոյներ եւ Հայեր Պոլիս ղրկուեցան: Ասոնք նախ Իւսկիւտար մնացին եւ յետոյ Էտիրնէգափուի եւ Ոսկեղջիւրի վրայ նոր թաղերու մէջ հաստատուեցան:[41]

ժդ. 1473ին, Ուզուն Հասանի պարտու-

---

37 Crit., 288—289; Karol., 155; Riggs, 175:
38 Crit., 303; Karol., 163, Riggs, 184—185:
39 Crit., 325; Karol., 172; Riggs, 127:
40 Babinger, 319:
41 Donado da Lezze, 71; Babinger, 418—419:

թենէն ետք, 3000 մահմետական գերի, Իսթանպուլ ղրկուեցաւ :

Բռնագաղթերու այս թուումը — անհաւանական չէ որ տեղեկութիւններէն ոմանք տարբեր բառերով կրկնուած ըլլան — կրնայ սպառիչ ըլլալ. բայց բաւական է հերքելու համար այն թիւր հաւատումը թէ Ֆաթիհ Յոյներուն մեծամասնութիւնը հակակշռելու համար ստուարաթիւ Հայեր փոխադրած է Պոլիս : Այս բոլոր վկայութիւնները կը վերաբերին, գրեթէ առանց բացառութեան, օրթոտոքսներու (Յոյն, Սերպ, Պուլկար, եւն.) : Միայն երկու անգամ յիշուած են Հայերը, եւ այն ալ առանց որոշ թիւի :

Պատճառ մը չկայ խորհելու թէ այս վկայութեանց հեղինակները դիտումնաւոր կերպով լռութեամբ անցած են հայկական բռնագաղթներուն վրայէն : Բռնագաղթները հպարտութեան ներշնչարան չէին :

Կը մնայ, հետեւաբար, քննել հայկական աղբիւրները :

Գ.

Անհաւանական չէ որ 1453ին, Կ. Պոլսոյ գրաւման ատեն, Հայեր գտնուած ըլլան քաղաքին մէջ, թէեւ այս մասին պատմական տեղեկութիւն մը ծանօթ չէ : Բայց գիտենք թէ Հայեր գոյութիւն ունէին Կալաթա-Բերա

լատինական արուարձանին մէջ, ուր Հայկական եկեղեցիներ ալ գոյութիւն ունէին[42]։

Ֆաթիհ, դրաւումէն ետք, գլխատել տուաւ Վենետիկի պայլը[43], որուն «պաշտպանութեան եւ իշխանութեան ենթակայ էին Հայերը (հաւանականաբար կաթողիկէ) եւ Հրեաները։ Բազմաթիւ կայսերական հրովարտակներ բացայայտօրէն կը յայտարարեն թէ այս երկու ազգերը կայսերական պատա-

---

[42] Տես Հայկ Պէրպէրեան, «Իսթանպուլի Ս. Սարգիս եկեղեցիները» (Սիոն, Հոկտ.—Նոյ. 1961)։ — Պատմաբան Շեհապետին Թեքինտաղի հաղորդած տեղեկութեանց համաձայն, Էտիրնէի դատը Մեհմետպին Ալի էլ Ֆենարիի կողմէ Եավուզ սուլթան Սելիմի վերջին տարին (1519) պատրաստուած Այասոֆիա վագըֆլարը թահրիր տեֆթերին մէջ (Ինգըլապ Քիւթիւփհանէսի, Մուալլիմ Ճեվտեթ եազմալարը, Նո. 64) յիշուած է Էտիրնէ Գափուի մերձակայ հայաբնակ թաղ մը, Մահալլէ-ի քենիսէ-ի سا تق (Սանթըրպը՞գ, Սանթը՞գ) անունով։ Ինչպէս ուրիշ թաղեր, այս թաղն ալ կոչուած է եկեղեցիին անունով։ 1519ին, եկեղեցին աւերակ էր։ Հոն գտնուած տուները էյ մենզիլ իւլ քեափիրի իւլ պինա կը կոչուէին (մենզիլ կը յորջորջուէին այն տուները որոնց տակ խանութ մը կը գտնուէր)։ Տեղւոյն բնակիչներէն, ի մէջ այլոց, յիշուած են Մկրտիչ, Գութլուշահ էլ Արմանի, Տէօվլեթեար էլ Արմանի։ Գրութիւնը թէեւ 16րդ դարուն պատրաստուած է, սակայն, ըստ տեղեկատուին, Ֆաթիհի շրջանէն տեղեկութիւններ կը պարունակէ։ (Այս տեղեկութիւնները կը պարտիմ Իսթանպուլէն Պ. Հ. Տ. Անդրէասեանի)։

[43] Francis Rey, *La protection diplomatique et consulaire dans les Echelles du Levant*. Paris, 1899, p. 115.

րաններուն ենթակայ չէին: Հրեաները պարտաւոր էին այս պաշտպանութեան փոխարէն մեծ գումարներ վճարել պայլին եւ բոլոր մեծ տօներուն նուէր մը տալ անոր»[44]: Բիւզանդիոնի գրաւումէն ետք Կալաթա-Բերայի Հայերը մնացին իրենց տեղը:

1. — Հայկական առաջին բնագաղթի մը վկայութիւնը պահուած է Աբրահամ Անկիւրացիի Ողբին մէջ[45], գրուած՝ բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքին անկման առթիւ: Աբրահամ Անկիւրացի ականատես վկայ մըն է դէպքերուն եւ առաջին բնագաղթներուն: Ֆաթիհի համար կ'ըսէ·

Դարձեալ հրաման եհան ուժգին,
Որ լսողացն է դառնութիւն,
Յամէն քաղաք տանըս Հոռմոց,
Որ են յիւրեանց իշխանութիւն

44 Depping, *Histoire du Commerce entre le Levant et l'Europe*. Paris, 1834, II, p. 337—338; Rey, ibid., p. 79.

Երկու հեղինակներն ալ կը յիշեն հնագոյն աղբիւրները:

45 Ողբը հրատարակուած եւ թարգմանուած է քանի մը անգամ: Նորագոյն քննական հրատարակութիւնն է Յ. Ս. Անասեան, Հայկական Աղբիւրները Բիւզանդիայի անկման մասին (Երեւան, 1957, էջ 35—55): Արշակ Ալպօյաճեան նոյն Ողբը հրատարակած է Ողբաձայն Պատմութիւն յաղագս առնելոյն Տանկաց զԿոստանդնուպօլիս խորագրով (Գահիրէ 1956), 1622ին օրինակուած ձեռագրի մը ընդօրինակութենէն քաղելով:

Ասաց · մարդիկ հանել տրնով ,
Տանել լնուլ յայն քաղաքին :
Մեծ վիշտ եղեւ Թուրքաց ազգին ,
Զոր եւ ողբան յոյժ լալագին :

Զի հարք յորդւոց բաժանէին ,
Դըստերք ի մարցըն կուզատին ,
Եղբայրք յեղբօրէ կուքակին ,
Ի հայրենեաց բազումք զըրկին :

Եւ ոչ միայն Տանկաց ազգին ,
Այլ զքրիստոնեայսն ի մէջ բերին ,
Ի քսան եւ ութ հոկտեմբերին ,
Զորս Հայ ի յԱնկիւրիոյ բերին :

Աստուածատուր Սաթըլմիշին ,
Եւ Սիմէոն Բարիփաշին ,
Եւ Պապայի որդի Այվատն ,
Եւ պարոն Գորգն հէշիմ Հանին[46] :

---

46 Այս չորս Հայերը փարթամ վաճառականներ պէտք եղած ըլլան, որոնցմէ երկուքին յիշատակութիւնը կը կարծեմ գտած ըլլալ Պուրսայի չերիի դատարանին արձանագրութեանց մէջ, զոր հրատարակած է Halil Inalcık, «15, asır Türkiye iktisadî ve ictimaî tarihi kaynakları» (*Istanbul Üniversitesi Iktisat Fakültesi Mecmuasi*, XV, 1953—1954), s. 64).

Ժառանգական թղթոնի մը արձանագրութեան մէջ, որ կը կրէ 9 ճամատա ի 893 թուականը (21 մայիս 1488) եւ կը վերաբերի Պուրսա մեռած Անկիւրացի Խոքենտերի, յիշուած են անոր քրիստոնեայ կինը Անկիւրիոյ մէջ, ինչպէս նաեւ Այվաթը եւ Սաթըլմըշ անուն երկու մանչերը, եւ Մարթա անուն աղջիկը :

Անկիւրացիին այս վկայութեամբ ալ կը հաստատուի թէ բնագաղթի առաջին ենթակաները մեծամասնութեամբ Թուրքեր էին։ 1453ին, անհաւանական չէ որ մաս մը Յոյներ ալ փոխադրուած ըլլան, բայց փոխադրուած Հայերը չորս հոգի էին միայն։ Ենթադրելով որ Աբրահամ Անկիւրացի միայն

---

(Պուրսա մեռած Հրեաներուն եւ Հայերուն թողօնները չերիի դատարանը արձանագրուած են, գանձուած է թողօնին բաշխման (քըսմեր) տուրքը, բայց ժառանգորդներուն միջեւ թողօնին բաժանման դատարանը միջամուխ չէ եղած։ Ոչ-իսլամներուն թողօններուն մասին տես Ö. L. Barkan, Kanunlar, s. 69)։

Արդ, Այվազ եւ Սաթըլմիշ 1453ին Անկիւրայէն Իսթանպուլ փոխադրուած չորս Հայերէն երկուքն են։ Շերիի դատարանին արձանագրութեան մէջ յիշուած են Խաքենտերին թողօնին մանրամասնութիւնները։ Այսպէս, Խաքենտեր, Պուրսա բերած էր 170 կտոր սոֆ, որոնց երկու կտորը 700 ագչէի ծախած էր։ Բաց ի բազմատեսակ սոֆերէ, բերած էր նաեւ ութը գաֆթան։ Իջեւանած էր Գարաճա-պէյ խանը չորս աղախինով (ճարիյէ)։ Իր գոյքերուն մէջ կը գտնուէին նաեւ երաժշտական գործիքներ՝ չորս չենկ եւ երկու գանուն։ Իրեն համար պատրաստել տուած էր ոսկեհուռ թանկարժէք հագուստ մը։ Այս թուումը գաղափար մը կու տայ Անկիւրիացի Խաքենտերի փարթամութեան եւ հաճոյասէր կենցաղին մասին։ Ֆաթիհ անոր երկու զաւակները Իսթանպուլ բերել տալով, անտարակոյս նպատակ ունեցած է որ Խաքենտեր առեւտրական յարաբերութիւններ հաստատէ Իսթանպուլի հետ եւս։

Միւս երկու Հայերն ալ անոնց նման վաճառականներ պէտք է եղած ըլլան։ Հաւանականաբար, այս Հայերուն փոխադրութիւնը որոշած է 1454ին Պրուսա այցելութեան ատեն։

*իր համշիրակները յիշած ըլլայ եւ ոչ՝ ուրիշ քաղաքներէ փոխադրուածներն ալ, դարձեալ Հայերը չնչին թիւ մը կը կազմէին: Բայց այս ենթադրութիւնը անտեղի է: Ինչ որ ստոյգ է, սա է թէ 1453 հոկտեմբեր 28ին Անկիւրիայէն չորս Հայ Ֆաթիհի հրամանով Պոլիս բերուած են:*

2. — *Երկրորդ բնագաղթ մը՝ դարձեալ Անկիւրիայէն՝ յիշուած է Երեւանի թ.* 2549 *ձեռագրին (Ժողովածու) յիշատակարանին մէջ, որուն հեղինակը կը գրէ.*

Ի թվականիս Հայոց ՋԺԳ (1464) ապրիլ ամսոյ ԻԲ (22) եղեւ վերափոխումն տէր Ներսէս եպիսկոպոսին Անկուրիոյ...: Իսկ անաւրէն արքայն Տանկաց ժողովեաց զքրիստոնէից մանկունսն եւ եբեր Ըստըմպօլ. իսկ եպիսկոպոսն եկեալ ի հետ մանկանցն եւ եբեր զթուղթ ազատութեան Հայոց. իսկ անաւրէն արքայն ոչինչ համարեցաւ զթուղթըն: Բայց զԱնկուրիոյ քրիստոնէքն շնորհեց նմա. եւ յետ Զ (6) տարոյ տարան ծընաւղք մանկանց ի Ըստըմպօլ եւ գնալով սրբոյն զհետ նոցա ի Ղալաթան. ոչ իւր վիճակին, այլ ամենայն քրիստոնէից էր սուրբ եպիսկոպոս տէր Ներսէս. ԽԵ (45) ամաց զերեզմանն եղեւ ի Ղալաթան, փոխեցաւ բարի մահուամբ ի Քրիստոս[47]:

*«Քրիստոնեայ մանուկներ»ուն «ժողովում»ը ենթադրել կու տայ մանկահաւաք*

---

[47] *Լ. Խաչիկեան*, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, *Բ. էջ* 216, *Նո.* 260:

(տեվշիրմէ) մը, թէեւ Ֆաթիհի օրով Հայերուն մէջ մանկահաւաք կատարած ըլլալուն մասին տեղեկութիւն մը ծանօթ չէ մինչեւ այսօր: Մանկահաւաքը ենթադրել կու տայ նաեւ կրօնափոխութիւն: Յիշատակարանին մէջ այս մասին անխուսափելի գանգատին բացակայութենէն կը հետեւի թէ մանկահաւաք տեղի ունեցած չէ եւ թէ «մանուկ» բառը գործածուած է երիտասարդ իմաստով, ինչպէս յաճախ: Նաեւ եթէ մանկահաւաք տեղի ունեցած ըլլար, վեց տարի ետք անոնց ծնողքները Պոլիս չէին բերուեր: Հետեւաբար, փոխադրուածները արհեստաւոր, գործաւոր կամ վաճառական երիտասարդներ էին: Բայց եթէ հաստատուի իսկ թէ մանկահաւաք է որ տեղի ունեցած է, այդ պարագային կրօնափոխ հայ մանուկները կամ երիտասարդները յունական մեծամասնութիւնը հակակշռելու ծառայած չեն ըլլար[48]:

1464ին Անկիւրիա գրուած Մաշտոցի մը յիշատակարանին մէջ Ներսէս եպիսկոպոս յիշատակուած է իբրեւ քաղաքին արհիեպիսկոպոսը[49], հետեւաբար, երկրորդ անգամ

---

48 Հ. Ս. Անասեան, հիմնուելով այս յիշատակարանին վրայ, կը գրէ թէ 1464էն սկսեալ Հայերը ենթարկուած են մանկաժողովի (ժե դարի ազատագրական շարժումները Արեւմտեան Հայաստանում, Երեւան, 1961, էջ 31):

49 Բաբգէն կաթողիկոս (Կիւլէսէրեան), Ցուցակ Ձեռագրաց Անկիւրիոյ կարմիր վանուց եւ շրջակայից: Անթիլիաս, 1957, էջ 991:

Իսթանպուլ մեկնած պէտք է ըլլայ ամէնէն ուշը 1464ի սկիզբները (վախճանած է 22 ապրիլ 1464ին) եւ, աւելի հաւանականաբար, 1463ին, պահելով հանդերձ Անկիւրիոյ եպիսկոպոսութիւնը կամ այս տիտղոսը։ Ըստ այսմ, «մանուկ»ները Պոլիս բերուած պիտի ըլլան 1458ին կամ 1457ին։

3. — Կարեւոր թիւով Հայերու փոխադրութեան վերաբերեալ վկայութիւնը կը գտնուի Քրիթովուլոսի Պատմութեան մէջ (տես վերը)։ Թէեւ թիւ չէ յիշուած, սակայն պատմագրին խօսքերէն բացայայտօրէն կը հետեւի թէ զանազան վայրերէ հարուստ, ուսեալ եւ արհեստաւոր Հայեր են փոխադրուածները։ Ամասթրիսի գրաւումը տեղի ունեցած է 1460ի վերջերը կամ 1461ի առաջին ամիսը։ Ուշադրութեան արժանի է որ Մաղաքիա Դպիր Ճէվահիրճի, աղբիւրը Զամչեանի, այս թուականին, այսինքն 1461ին կը դնէ Իսթանպուլի հայ «պատրիարքութեան» հիմնադրումը Ֆաթիհի կողմէ։ Ուշադրութեան արժանի է, սակայն, նոյն ատեն, որ Քրիթովուլոս կը յիշէ Յունաց պատրիարքին եւ Հրեաներու խախամապետին անուանումները, բայց ոչ՝ Հայոց «պատրիարքութեան» հաստատումը կամ հոգեւոր գերագոյն պետի մը անուանումը։ Այդ թուականին, Պրուսայէն չորս կամ վեց ընտանիք կը բերուին Պոլիս եւ, ինչպէս նախապէս Անկիւրայէն բերուած «մանուկ»ները, Կաղաթա կը հաստատուին, եւ ոչ՝ Իսթանպուլ։

4․ — Չորրորդ յիշատակութիւնը կը վերաբերի Տրապիզոնցիներու։

Տրապիզոն գրաւուեցաւ 15 օգոստոս 1461ին։ Պոլիս ղրկուեցան, բաց ի կայսրէն, անոր ընտանիքէն եւ աւագանիէն, քաղաքին նշանաւոր ընտանիքները։ Ասոնց հետեւեցաւ ժողովուրդին մէկ մասը, որուն բնակութեան վայր յատկացուեցաւ Ոսկեղջիւրին վրայ Ֆեներ, ուր կը գտնուէր Յունաց պատրիարքարանը։ Ասոնք կը կոչուէին Տրապիզոնցիներ[50]։ Տուրսուն պէյ կը գրէ թէ Ֆաթիհ Տրապիզոնի գերիներուն մէկ մասն ալ Իսթանպուլ ղրկեց[51]։

Տրապիզոնի բռնագաղթին յիշատակութիւնը պահուած է Երեւանի թ․ 7831 ձեռագրին (Աւետարան) յիշատակարանին մէջ։ Տրապիզոնցի Աւետիք 1475ին «այժմ սուրկուն ի յԸստըմպաւլս ի յԱյթոթոսիայի մահալան, ի դուռն սրբոյն Սարգսի զաւրավարին», կը գնէ Կաֆայի (Քեֆէ) գրաւումէն (1475) ետք գերուած եւ Պոլիս բերուած աւետարան մը[52]։

5․ — Բռնագաղթի հինգերորդ յիշատա-

---

[50] Angiolello, p 45, ուր «Ֆեներ»ի տեղ տպագրուած է Tener, ձեռագրին սխալ ընթերցումով։

[51] Dursun. s. 192:

[52] Լ․ Խաչիկեան, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, Բ․ էջ 389։ 1487ի մարդահամարին համաձայն, Տրապիզոնի մէջ կային 226 տուն մահմետական, 734 տուն Յոյն, 129 տուն Հայ, 33 տուն Ճենովացի։ (Halil Inalcık, s. v. «Mehmed II» (IA), s. 519։

*կութիւնը կը վերաբերի Ամասիոյ եւ յիշուած է Ամիրտովլաթ Ամասիացիի համար ընդօրինակուած Միխայէլ Ասորիի եւ Սամուէլ Անեցիի ժամանակագրութեանց հետեւեալ յիշատակարանին մէջ :*

Արդ գրեցաւ Պատմագիրքս այս ի թուականութեան Հայոց ՋԻԹ (1480) ի քաղաքիս ի Բիւզանդիայ, զոր այժմ կոչի Կոստանդինուպաւլիս, ձեռամբ մեղապարտ եւ անարհեստ գրչի Ներսէս սուտանուն քահանայի, ի թագաւորութեան սուլտան Մահմատին, ի նեղ եւ ի նուրբ ժամանակիս, զոր բազում մրրիկ յարուցանէր ի վերա քրիստոնէից եւ իւր ազգին, ի տեղէ ի տեղ փոխելով եւ հարկապահանջութեամբ եւ այլ բազում վշտաւք : Արդ երես անկեալ աղաչեմ··· անմեղադիր լերուք, զի ի մէջ դառնութեան գրեցի զայս, զի բռնութեամբ եւ ակամայ յԱմասիու զմեզ բերին ի Կոստանդինուպաւլիս, եւ ես լալով եւ բազում հառաչանաւք գրեցի զսա···[53] :

*Ամասիայէն կատարուած այս բռնագաղթը հաւանականաբար 1480էն դէթ մէկ կամ երկու տարի առաջ եղած է :*

*Տոնալտո տա Լեցցէ կը պատմէ թէ Ֆաթիհի որդին Պայեզիտ, որ Ամասիայի կուսակալն էր մինչեւ հօրը մահը (1481), մերժած էր իր բարեկամներէն հայ վաճառա-*

---

[53] *Ն. Պողարեան*, Մայր ցուցակ ձեռագրաց Սրբոց Յակոբեանց, *Գ. էջ* 259—252, *Լ. Խաչիկեան*, ԺԵ դարի··· յիշատակարաններ, *Բ. էջ* 443 :

*կանի մը եւ անոր ընտանիքին Պոլիս առաքումը, որ Հայրը պահանջած էր մասնաւոր պատուիրակի մը միջոցաւ, եւ այս մերժումը պատճառ եղած էր հօրը հետ իր յարաբերութեանց ձգտումին*[54]:

6. — *Ըստ Համմերի, Կաֆայի գրաւումէն ետք* (6 *յունիս* 1475), *բնակիչներուն մէկ մասը, իբր* 40,000 *հոգի, Իսթանպուլ ղրկուեցան, եւ* 1500 *ազնուական ճենովացի երիտասարդներ ենիչերիներու գունդին մաս կազմեցին*[55]: 8 *յուլիսին, բոլոր Լատինները հրաման ստացան իրենց բոլոր շարժուն ըստացուածքներով նաւ բարձրանալ*: 12 *յուլիսին նաւերը ճամբայ ելան անծանօթ ուղղութեամբ մը: Ուղեւորութեան ընթացքին, նաւերէն մէկուն մէջ ըմբոստութիւն մը ծագեցաւ եւ նաւաստիները սպաննուեցան: Տարագրեալները Քիլիա* (*կամ ուրիշ աղբիւրի մը համաձայն՝ Աքքերման*) *ցամաք ելան, բայց քաղաքին կառավարիչը գրաւեց անոնց հարստութիւնը եւ զիրենք իբրեւ գերի տարաւ Սուչովա: Միւս նաւերը Իսթանպուլ*

---

[54] Donado da Lezze, p. 164—165. *Տես նաեւ Հայկ Պէրպէրեան, «Պայեզիտի հայ բարեկամը»* (Հանդէս Մշակոյթի, *Իսթանպուլ, Բ.* 1952), *Թ.* 11—12, *էջ* 22:

[55] Hammer, GOR., II, S. 139. Trad. fr. III, p. 196—197. Hammer*ի աղբիւրներն են* *Histoire de Tauride*, I. p. 220; Giustiniani, *Anali di Genova*, Mouraview-Apostol, *Voyage en Tauride*, 1820, p. 191; Zinkeisen, GOR. II, S. 386; Ibn Kemal, s. 388 (*bir nice yüz ev sürdü*).

ժամանեցին Մանքուպի եւ Թանայի (Ազով) գրաւումէն ետք, սակայն ժանտախտի բուռն համաճարակին պատճառաւ, որ այդ ատեն կը տիրէր քաղաքին մէջ, Իսկիւտար ցամաք հանուեցան, եւ միայն համաճարակը մեղմանալէ ետք Կալաթա եւ Իսթանպուլ փոխադրուեցան[56]:

Տարագիրներուն մէջ կը գտնուէին բազմաթիւ Հրեաներ, Յոյներ եւ Հայեր[57]: Հրեաները, որոնք ծանօթ են Գարայի անունով, Խասքէօյ եւ Յոյները Կալաթա հաստատուեցան: Հայերը, որոնք ըստ ճենովացի պատմագիրներու, Յոյներէն աւելի ստուարաթիւ էին Կաֆայի մէջ, Սուլումանաթըրի կողմերը բնակեցան, եւ Ֆաթիհէն եկեղեցին մը խնդրեցին: Իրենց տրուեցաւ բիւզանդական Մանուէլի վանքը, որուն անունը Ս. Նիկողայոսի փոխեցին եւ զայն երկար ատեն իրրեւ աղօթատեղի գործածեցին: Այս եկեղեցին 16րդ դարուն մզկիթի վերածուեցաւ եւ կոչուեցաւ Քեֆելի մեսճիտ[58]:

---

[56] Zinkeisen, II, 386; Babinger, p. 418—419: Այս տեղեկութեան աղբիւրը կը թուի ըլլալ Laudivius Vezanensis Luensisի նամակը՝ հրատարակուած Card. Papiensisի Նամականիին մէջ, 874 (Zinkeisen, II, S. 385).

[57] Texier et R. P. Pullan, *L'Architecture byzantine*, London. 1864. p. 221 (ըստ Paspatiի, 306, n. 1).

[58] Seyid Ali, *Hadıkat ül-cevami*. Istanbul, 1281, s. 186, No. 20; A. G. Paspati, *Byzantinai Meletai*, Constantinopolis, 1887, p. 306, ուրկէ՝

Կաֆայէն Իսթանպուլ փոխադրուած Հայերուն մասին այսքան կը թուին ըլլալ օտար աղբիւրներու տեղեկութիւնները:

Հրաչեայ Աճառեան, Համմերի հաղորդած տեղեկութեան վրայ հիմնուելով կը գրէ. «Կաֆան (այժմ Թէոդոսիա) հայաբնակ մեծ քաղաք էր Ղրիմում. եթէ ընդունենք որ այդ թուի (ըստ Համմերի՝ 40,000) կէսը հայ էր, Պոլսի հայ գաղթականութեան պատմութիւնը բոլորովին կը փոխուի. 20,000ը այնպիսի խոշոր մի թիւ է, որի առաջ նսեմանում են Փոքր-Ասիայի հայերը: Այսպիսով Պոլսահայ բարբառը էապէս դառնում է Ղրիմի բարբառը, եւ դրա համար է որ այնքան խոշոր նմանութիւն ունի Նոր-Նախիջեւանի բարբառի հետ:

«Ի հաստատութիւն այս կէտի կարող է ծառայել Պոլսահայ բարբառի մէջ Թուրքերէն բառերի արտասանութեան խնդիրը»[59]: (Շարունակութիւնը կը վերաբերի լեզուաբանական այս վարկածին ապացուցման):

Հայկական ծանօթ աղբիւրները Աճառեանի այս ենթադրութիւնը հաստատելու բնոյթը ունենալէ շատ հեռու են:

Հ. Մինաս Բժշկեան 1830ին հրատարակած է Կաֆա գրուած եւ, յետոյ, Նոր-Նախի-

---

Vladimir Mirmiroğlu, *Fatihin Donanması ve deniz savaşları. Istanbul*, 1946, s. 105.

59 Հ. Աճառեան, Քննութիւն Պոլսահայ բարբառի (Երեւանի Պետական Համալսարանի Գիտական Աշխատութիւններ, 19 (1941), էջ 24—25:

ջեւան եւ ի վերջոյ Նեավետ գիւղը փոխադրուած մագաղաթեայ աւետարանի մը յիշատակարանը, ուր ի մէջ այլոց, Կաֆայի Հայ իշխաններուն դաւաճանաբար սպանութենէն ետք պատմուած է թէ Թուրքերը եւ Թաթարները կոտորած են «զամենայն ազգս Հայոց, որք (Թաթարք) ի նմին աւուր բազմամարդ քաղաքն Ֆէոդոսիա սակաւաբնակ արարին, զի զծերս եւ զտղայս, զարս եւ զկանայս սրոյ ճարակ ետուն եւ զարիւնս նոցա յերկիր հեղեալ իբրեւ զվտակս գետոց ընթանայր ի փողոցսն. անթիւ աղջիկք եւ մանկունք եւ մատաղ տղայք գերեալ առաքեցին ի Պօլիս առ սուլթանն. զնոյն արարին ի Կազարաթ եւ ի Սուրխաթ: Այսպէս բազում յիշխանաց եւ ազնուականաց եւ հասարակ ժողովրդոց մեր՝ յոմանս առ Աստուած կատարեցան եւ յոմանս գերի վարեցան վասն հաւատոցն եւ վասն անուան Յիսուսի Քրիստոսի»[60]:

Այս յիշատակարանին հեղինակը, որ կը թուի ժամանակակից եղած եւ կամ ժամանակակիցներէ գրուած պատմութենէ մը օգտուած ըլլալ, ոչ միայն քանի մը հազար Հայու տարագրութեան խօսքը չէ ըրած, այլ շատ յստակօրէն ալ չէ ըսած թէ տարեց անձերը տարագրուած են: Միայն մատաղատի աղջիկներու եւ մանչերու գերութիւնը յիշած է:

---

[60] Հ. Մինաս Բժշկեան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան: Վենետիկ, 1830 էջ 339—340:

Որք Մայրաքաղաքին Կաֆայու *վերնագրով տաղի մը*[61] *հեղինակը՝ Ներսէս, որ դէպքերուն ականատես կամ, ամէն պարագայի մէջ, ժամանակակից կ'երեւայ, կը պատմէ բոլոր Լատիններուն տարագրութիւնը.*

*Զինչ որ Ֆրանկ կայր քաղաքին*
*Զամէն Ստամպօլ առեալ տարին* (*էջ* 88*բ*)

*ինչպէս նաեւ երկսեռ մանուկներու եւ երիտասարդներու հաւաքումը,*

զդուստր եւ զորդիքն ժողովեցին
(*էջ* 88*ա*)

*եւ բռնի կրօնափոխութիւններն ու հարստահարութիւնները, բայց ոչ՝ Հայոց զանգուածային տարագրութիւնը:*

*Ի վերջոյ,* 17*րդ դարու տաղասաց Մարտիրոս Ղրիմեցի, անտարակոյս օգտուելով հանգերձ հնագոյն աղբիւրներէ, շատ աւելի չափաւոր լեզուով մը կը պատմէ քաղաքին աւերումը, Օսմանցիներուն հարստահարութիւնները, եւն., եւ, ինչ որ բոլորովին նորութիւն է, կ'ըսէ.*

Իսկ մերայինք մնացեալք ի նոյնն
պայման,
Տուեալ հարկս կայսեր կացին
անսասան[62]:

---

[61] *Այս տաղը* (*Երուսաղէմ, Նո.* 1455, *էջ* 233) *հրատարակած է Յ. Քիւրտեան* (Բազմավէպ, 1957, *էջ* 83—84):

[62] *Ա. Ա. Մարտիրոսեան,* Մարտիրոս Ղրիմեցի: *Երեւան,* 1958, *էջ* 150, *տ.* 245—246:

Այս երեք ծանօթ վկայութիւններէն առաջին երկուքն են որ արժանի են նկատառման, եւ կը հաստատեն թէ գլխաւորաբար հայ մանչեր եւ աղջիկներ եւ մաս մը չափահասներ Ղրիմէն Իսթանպուլ փոխադրուած են, սակայն ասոնց թիւը շատ հեռու է 20 կամ նոյն իսկ 10 հազարէ, նոյն իսկ եթէ դեռահասակներուն հետ բազմաթիւ չափահասներ ալ գտնուած ըլլան:

AP., 22. որուն տեղեկութիւնները կըրկնած է NEŞ., կ'ըսէ թէ Ղրիմի մէջ գրաւուած բոլոր վայրերուն պէկերը Իսթանպուլ տարուեցան· կիներն ու աղջիկները սուլթանը իր զինուորներուն (kul, ղուլ) բաժնեց[63]:

7· — Ֆաթիհի օրով, Օսմանցիներուն եւ Գարամանօղլուներուն միջեւ տեղի ունեցան մէկէ աւելի պատերազմներ, որոնց ճշգրիտ ժամանակագրութիւնը դժուար է կազմել[64]:

Ըստ Թեվգիի Մեհմետ փաշայի ժամանակագրութեան, Ֆաթիհ Հիճ· 872ին (2· 8· 1467—22· 7· 1468) Գարամանի աշխարհը արշաւեց եւ գրաւեց Գոնիա եւ Լարենտէ (այժմ Գարաման) քաղաքները եւ Կեվելէի բերդը, ինչպէս նաեւ ուրիշ մեծ քաղաքներ[65]:

---

[63] AP., s. 223; Neş., II, s. 826:

[64] Babinger, p. 361:

[65] Tevkiî Mehmet Paşa, *Tevarih-üs Selâtîn-il Osmaniyye* (TTEM, 14 (1924), No. 2 (79) et No. 3 (80) s. 149:

Թեվգիի (սուլթանական հրովարտակներուն

Ըստ AP.ի եւ ուրիշներու Հիճ. 871ին (14 Օգոստոս 1466—2 Օգոստոս 1467) Գարամանօղլուները պարտուեցան եւ, զինուորական ուրիշ գործողութիւններէ ետք, վեզիր Մահմուտ փաշա հրաման ստացաւ Լարենտէէն եւ Գոնիայէն քանի մը հարիւր տուն Պոլիս փոխադրել: Մահմուտ Իսթանպուլ ղրկեց արհեստաւորներ եւ արուեստագէտներ: Ռում Մեհմետ փաշա, որ թշնամի էր Մահմուտին, զայն ամբաստանեց թէ թըշնամիին փախուստը դիւրացուցած եւ մեծամասնութեամբ Իսթանպուլ ղրկած էր չքաւորները, եւ ոչ՝ հարուստները, որոնցմէ կաշառուած էր: Ֆաթիհ պաշտօնանկ ըրաւ Մահմուտը եւ Գարամանի երկիրը կցեց (?) կայսրութեան[66]:

---

թուղրան քաշող. նիշանճի, թուղրաճի) գրած է Օսմանեան հարստութեան ժամանակագրական պատմութիւն մը, որ քառորդ դարու հնութիւն ունի Աշըգ փաշայի, Նեշրիի, Իպն Քեմալի եւ ուրիշ քանի մը պատմագիրներու պատմութեանց վրայ: Այս ժամանակագրութիւնը արաբերէնէ թուրքերէնի թարգմանած եւ հրատարակած են Միւքրիմին Հալիլ Ինանչ TTEMի մէջ (տես ծ. 65), որ շարունակութիւնն է OTEMի, եւ Konyalı Ibrahim Hakki (*Osmanlı tarihleri*, Istanbul, s. 343—369: Վերջին լաւագոյն թարգմանութիւնն է: Թեւֆիքի գործէն օգտուած են յաջորդ պատմագիրները:

[66] AP., s. 216; Neş., II, s. 783; Ibn Kemal, s. 276; Uzunçarşılı, *Osmanli Tarihi*, II, s. 90, ըստ Saadeddinի Tac-üt Tevarihին, I. s. 512; Babinger, p. 326 (որ այս բռնագրաւութին թուականը Հիճ. 872—1467 օգոստոս 1468) գրած է, ինչ որ սխալ է (Uzunçarşılı, II, s. 90 n. 1):

Ըստ Թեվզիի Մեհմետի, Հիճ. 873ին (22 · 7 · 1468—11 · 7 · 1469), Գարամանի նահիէն վրայ բանակ մը ղրկուեցաւ: Գրաւուեցան Ուճ-Հիսարը, Օրթա-Հիսարը եւ Գարահիսարը[67]:

Գարամանի ժողովուրդը ապստամբեցաւ: Ֆաթիհ Ռում Մեհմետը ղրկեց Գարամանօղլուներուն հարստութեան բոլոր անդամները սպաննելու պաշտօնով: Ռում Մեհմետ անխղճաբար վարուեցաւ, անպատմելի խժդժութիւններ գործեց, շատ մարդ ըսպաննեց, թիւրպէները, մետրեսէները կողոպտեց, եւ քաղաքին բնակչութեան կարեւոր մէկ մասը Իսթանպուլ ղրկեց, քաղաքը աւերակի վերածելէ ետք: Նոյնպէս Իսթանպուլ փոխադրեց Գոնիայի եւ Էրէյլիի բնակիչներէն շատերը: Առաջիններուն մէջ կը գտնուէր Ճելալէտտին Ռումիի սերունդէն Էմիր Ալի Չելեպի, որդին Ահմետ Չելեպիի: Թուրք պատմագիրները Ռում Մեհմետի այս անգութ արարքները կը վերագրեն Իսթանպուլի գրաւման վրէժը լուծելու նպատակին[68]: Ռում Մեհմետ Լարենտէէն անցաւ Էրէյլի, ուր նոյնպէս մեծ աւերումներ գործեց: Այս դէպքերը տեղի ունեցան Հիճ. 874ին (11 · 7 · 1469— 29 · 6 · 1470):

Şikâri կը թուի չափազանցած եւ չփոթած ըլլալ դէպքերը: «Քաղաքէն (Լարեն-

---

[67] TTEM, ibid., s. 149. (Այս Գարահիսարը Տեվելու Գարահիսարն է, տես Ibn Kemal, s. 231):

[68] AP., s. 218; Neş., II, s. 790.

տէ) 31,000 մահմետական, 7,000 անհաւատ (քրիստոնեայ) տուն ցանկագրելով տեղահան ըրաւ» կ'ըսէ: «Յետոյ, Ագսարայն ալ տեղահան ընելով Իսթանպուլ տարաւ[69]»: Հաւանական է որ «տուն» բառով պէտք է «անձ» հասկնալ:

Րում Մեհմետի արարքները ժողովուրդը բոլորովին գրգռեցին Օսմանցիներուն դէմ, եւ Րում Մեհմետ Վարագ Թիւրքմէններէն պարտուեցաւ: Իր գրաւած աւարը Թիւրքմէններուն ձեռքը ինկաւ[70]: Գարամանօղլուները վերստին տիրացան իրենց երկրին: Րում Մեհմետ, վերադարձին, պաշտօնանկ եղաւ եւ սպաննուեցաւ (1470)[71]:

Ըստ Թեվգիի Մեհմետի, Հիճ. 874ին (11· 7· 1469— 29· 7· 1470) Գարաման բանակ ղրկուեցաւ, որ գրաւեց Նիյտէն, Ագսերայը, Էրմենեքը եւ Իչ-Էլը[72]:

Ըստ ուրիշներու, Րում Մեհմետի յաջորդած է Իսհագ փաշա, որ Ագօմարայի վրայ գացած եւ ժողովուրդին մէկ մասը Իսթանպուլ փոխադրած է Հիճ. 875ին (30· 6· 1470 —19· 6· 1472): Şikâri տարագրեալներուն մէջ կը թուէ 300 չեյխ, քարոզիչ, միւֆթի, գիտնական, եւն., այս տեղահանութիւնը վերագրելով Րում Մեհմետի[73]: Այս տարա-

69 Sikârî, s. 197:

70 Uzunçarsıli, II, s. 91:

71 Şehabeddin Tekindağ, s. v. «Mehmed Paşa Rum» (IA), s. 595 a:

72 TTEM, ibid., s. 150:

73 AP., s. 218—219; Neş., s. 791; Sikârî, s. 197:

գրեալներուն յատկացուած թաղը անոնց անունով կոչուեցաւ Ագսերայ մահալլէսի։

Գարամանօղլուներու դէմ վերջին արշաւանք մը կը յիշուի Հիճ. 878ին (29. 5. 1473—17. 5. 1474), երբ Գարամանի աշխարհը ամբողջովին գրաւուեցաւ[74]։ Այս արշաւանքը յանձնուած է Կետիք Ահմետ փաշայի, որ զինուորական կարգ մը գործողութիւններէ ետք, Գարամանիոյ բոլոր ազնուականները խնձոյքի հրաւիրելով դաւաճանաբար սպաննեց։ Յետոյ, իրեն հետ Իսթանպուլ փոխադրեց անհամար թիւով այրեր, կիներ եւ մանուկներ, որոնք, յետոյ, մասամբ Թրակիա, մասամբ Սերպիա եւ մասամբ Պոսնիա եւ Ալպանիա ղրկուեցան[75]։

Որքան ալ Օսմանցիներուն եւ Գարամանօղլուներուն միջեւ մղուած պատերազմներուն պատմութեան ժամանակագրութիւնը եւ տեղահանութեանց մանրամասնութիւնները բացարձակ ստուգութեամբ ծանօթ չըլլան, տրուած տեղեկութիւններէն որոշապէս կը հետեւի թէ տեղահանուածներուն պատճառը, այս պարագային, ոչ միայն Իսթանպուլի բնակչութիւնը աւելցնելու հոգն էր, այլ Գարամանօղլուներուն ընդդիմու-

[74] TTEM., ibid., s. 152:

[75] Donado da Lezze, p. 71; Babinger, p. 403; Caterino Zeno, Travels in Persia, in *Travels to Tana and Persa by Josafa Barbaro and Ambrogio Contarini* (The Hakluyt Society, 1873), p. 31. Հայերէն թարգմանութիւնը՝ Յ. Յակոբեան, Ուղղեգրութիւններ, Ա. էջ 167։

*թիւնը՝ վերջնականապէս բեկանելով՝ զօրաւոր թշնամի մը բնաջնջելու ծրագիրն էր։ Տարագրուածները մեծամասնութեամբ մահմետականներ էին, բայց անոնց հետ տեղահանուած են նաեւ Յոյներ եւ Հայեր։*

*Գարամանցի Յոյները հաստատուած էին Եախդուլէի եւ Սամաթիայի միջեւ եւ ունէին Այիոս Գոնսթանթինոս անուն եկեղեցի մը*[76]։

*Հայերու փոխադրութեան վերաբերեալ երկու ձեռագրական յիշատակարան միայն ծանօթ են մինչեւ այսօր։*

*Առաջինը կարճ յիշատակագրութիւն մըն է, պահուած՝ Գրիգոր Դարանաղցիի* ժամանակագրութեան *սկիզբը, անանուն ժամանակագրութիւններէ քաղուած ժամանակագրութեան մը մէջ*[77]։

ՋԺԷ (1468) այս սուլթանն Մուհամմատ գնաց բազում զօրօք ի Ղարամանն եւ զերկիր էառ եւ զմարդն սուրկուն եբեր ի Ըստամբօլ։

*Այս յիշատակութիւնը կը վերաբերի*

---

[76] *Տոքթ. Յ. Թորգոմեան,* Երեմիա Չելեպի Քէօմիւրճեան. *Ա, էջ* 7, *տ.* 45—47։ *Թուրքերէն թարգմանութիւն՝* H. D. Andreasyan, Eremya Çelebi Kömürcüyan, Istanbul Tarihi, Istanbul, 1952, s. 2, 28, 77, 88, 201:

[77] *Գ. Դարանաղցի, Հր. Նշանեան, Երուսաղէմ,* 1915, *էջ* 10։ *Այս ժամանակագրութիւնը չի գտնուիր Գ. Դարանաղցիի ժամանակագրութեան նոր հրատարակութեան մէջ (Վ. Ա. Յակոբեան,* Մանր ժամանակագրութիւններ։ *Երեւան)*։

Մահմուտ փաշայի կատարած տեղահանութեան, որուն ենթարկուեցան գլխաւորաբար արհեստաւորները եւ արուեստագէտները: Թէեւ Հայոց յիշատակութիւնը չէ եղած, սակայն անհաւանական չէ որ 1468ին մաս մը Հայեր ալ Իսթանպուլ բերուած ըլլան:

Երկրորդ վկայութիւնը կը գտնուի 1480ին Մատթէոս աբեղայի կողմէ Ամիրտոլլաթ Ամասիացիի համար ընդօրինակուած Սաղմոսի մը յիշատակարանին մէջ.

Դարձեալ ի թուականիս Հայոց ՋԺԸ (1469) սուրկուն արար խոնտքարն զՂարամանին աշխարհին զհայ ազգս. եւ զիս՝ անպիտան հողս զՄարտիրոս հետ բերին ի Կոստանդնուպոլիս, առ ոտս սուրբ վարդապետին մերոյ, Տէր Մաթէոսի Սեբաստացւոյ եւ Աբրահամ վարդապետի Տրապիզոնցւոյ...[78]:

Այս Սաղմոսը ընդօրինակուած է «ի դուռն Զարխաբան սուրբ Աստուածածնին», որուն տեղը յայտնի չէ սակայն:

Արշակ Ալպօյաճեան, ենթադրելով որ «Ղարամանի աշխարհն» բառերով Մարտիրոս աբեղայ «ամբողջ Կապադովկիան» ըսել ուզած է, որովհետեւ հաւանական չէ որ Լարենտէ (Գարաման) քաղաքին «Հայերուն թիւը այնքան մեծ կրնար եղած ըլլալ», կը հետեւցնէ թէ 1479ին Իսթանպուլ փոխա-

78 Վ. Ց. Թորգոմեան «Ամիրտովլաթայ Սաղմոսը» ՀԱ, 1895, էջ 247: Նոյնը Երեմիա Չելեպի Քէօմիւրճեան» Ա, էջ 227—228 եւ Լ. Խաչիկեան, ԺԵ. դարի ... յիշատակարաններ, Բ. էջ 441:

դրուած Հայերը մեծամասնութեամբ Կեսարիոյ եւ Արդէոսի ստորոտը տեղաւորուած Հայերէն եղած ըլլալու են, եւ թէ, հետեւաբար, «Պոլսոյ հայութեան ամէնէն ձեռներէց եւ ամէնէն աւելի յառաջադէմ եւ ամէնէն աւելի հմայիչ անուն մը ունեցող հայ թաղին՝ Սամաթիոյ պատուական հայութեան նախնիքն ալ Կեսարացիք ըլլան»[79]:

Արդ, Մարտիրոս աբեղայ ըսած չէ թէ տեղահանուած Հայերը ստուարաթիւ էին, եւ «զհայ ազգս» բառերը պարզապէս կը նշանակեն «Հայերը» եւ ոչ թէ «ամբողջ նահանգի մը բոլոր Հայերը առանց բացառութեան կամ մեծամասնութեամբ»: Գարամանիոյ մէջ գրաւուած քաղաքներուն շարքին Կեսարիա բնաւ չէ յիշուած: Մարտիրոս աբեղայի օրով կատարուած տեղահանութիւնը Գարամանիոյ վերջնական կցումէն ետք կատարուած ըլլալ կը թուի եւ այդ թուականին իսկ Կեսարիոյ կցումը Օսմանեան կայսրութեան ստուգօրէն ծանօթ չէ[80] Սակայն նոյն իսկ եթէ Արշակ Ալպօյաճեանի բոլոր ենթադրութիւնները ճիշտ ըլլան, անոնցմէ հանած հետեւութիւնները լոկ ենթադրական են:

Արդարեւ, Էվլիա Չելեպի, իր Ուղեգրութեան մէջ[81], կը թուէ Իսթանպուլի Թա-

---

79 Արշակ Ալպօյաճեան, Պատմութիւն Հայ-Կեսարիոյ: Գահիրէ, 1937, էջ 584—586:

80 Besim Darkot, s. v. «Kayseri» (IA), s. 490 a:

81 Evlia Çelebi, *Seyahatname*, I, s. 114 (Is-

ղերուն մէջ հաստատուած տարագիրները։ «Թոգաթի եւ Սըվազի Հայերը Սուլումանաթըր» հաստատուած են[82], Գարամանցիները՝ Պիւյիւք Գարաման, Գոնիացիները՝ Քիւչիւք Գարաման, եւն։ Էվլիա, որ 17րդ դարու հեղինակ մըն է, այս տեղեկութիւնները քաղած պէտք է ըլլայ թէ՛ այդ թաղերուն բնակիչներէն եւ թէ քաղաքապետութեան (գատր) արձանագրութիւններէն։ Արշակ Ալպօյաճեան, որ Էվլիա Չելեպիի գործը չէ տեսած թէեւ զայն յաճախ յիշած է, այս մանրամասնութիւնները ըրած է, որովհետեւ ինք ալ կեսարական ծագում ունի։

Ֆաթիհի օրով Իսթանպուլ Հայերուն վերաբերեալ տեղեկութիւնները ապահովաբար ամբողջ իրականութիւնը չեն ներկայացներ։ Հայկական աղբիւրները կը վկայեն Անկիւրիայէն (Անգարա), Պրուսայէն, Ամասիայէն, Տրապիզոնէն եւ Գարամանիայէն[83]

tanbul, 1314)։ Էվլիա կը թուէ ուրիշ թաղերու մէջ հաստատուած տարագիրները։

[82] Ըստ Ayverdiի (s. 76, n. 85), հաստատուած են Սամաթիա, Սուլու Մանասթըր, Գումգափու եւ Պալաթ։

[83] Վ. Ց. Թորգոմեան, անդ, Ա, էջ 210, Ֆաթիհի օրով Կիլիկիայէն եւ Բաբերդէն ալ Հայերու փոխադրութիւնը կը յիշէ։ «Կիլիկիա» կը թուի գործածուած ըլլալ Գարամանիայի տեղ, որովհետեւ Ֆաթիհ չէ որ Կիլիկեան գրաւած է, այլ Եավուզ սուլթան Սելիմ (1512—1520)։ Թորգոմեան Բաբերդէն փոխադրութեանց աղբիւր ցոյց տուած է Մարտիրոս արեգայի յիշատակարանը, ուր Բաբերդէն հայկական տեղահանութեան խօսք չկայ, որքան ալ տեղահանու-

*հայկական բռնի տեղափոխութեանց մասին : Ցաթիհի պատմագիրը Քրիթովուլլոս առանց բնակավայրի յիշատակութեան Հայերու փոխադրութիւնը կը յիշէ , իսկ Էվլիա՝ Թոգաթի եւ Սեբաստիոյ Հայերուն տեղահանութիւնը : Թէ այս վերջին երկու քաղաքներէն ո՞ր թուականին Հայեր Իսթանպուլ բերուած են՝ յայտնի չէ :* 1453*ին մինչեւ* 1479 *Սեբաստիոյ*[84] *եւ Թոգաթի*[85] *մէջ գրուած յիշատակարաններուն մէջ տեղահանութեանց մասին խօսք չկայ :*

1344*ին* (?) *Կաֆա/Քեֆէ գրուած եւ Սեբաստիոյ Ս. Նշանի վանքը պահուած աւետարանի մը վերջին ստացողը, որ ժամանակակից է Ցաթիհի եւ կը թուի Իսթանպուլ ապրած ըլլալ, կը գրէ ․*

...Քրիստոնեայք տարաշխարհիկ եղեալ սուրկուն բերելով սուլթան Մահամմատն յԸստամպօլ ոչ թէ յԱնկիւրիոյ միայն, այլ յամենայն աշխարհէ որ ընդ իւր իշխանութեամբն է եւ հանապազ ի բերել ի ներս է ․

---

*թիւն մը հաւանական ըլլայ : Ըստ այսմ պէտք է ուղղել Հ. Տ. Անդրէասեանի յիշեալ թարգմանութեան մէջ «Բաբերդի եւ Ատանայի շրջանէն»* (*էջ* 80) *տեղահանութեանց յիշատակութիւնը :*

84 *Թ. Գուշակեան*, Ցուցակ հայերէն ձեռագրած Ս. Նշան վանուց ի Սեբաստիա : *Վիեննա*, 1901 :

*Աննշան յիշատակութիւն մը* 1467*ին՝ Լ. Խաչիկեան*, ԺԵ դարի... յիշատակարաններ, *Բ. էջ* 265, *Թ.* 338 :

85 *Արշակ Ալպօյաճեան*, Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց :

բայց ի յողորմութենէն յԱստուծոյ այն ի՞նչ է որ սիրով ընդունեցաւ փատիշահն զՀայոց ազգս եւ ամենայն քաղաքացոց եկեղեցեաց շնորհեաց շէն եւ փարթամ եւ մեծ· Աստուած զիւր տովլաթն յիշեալ առնէ· ամէն[86]:

*Դժբախտաբար, այս տողերուն հեղինակը աւելի մանրամասնութիւն չէ հաղորդած:*

Դ.

*Իսթանպուլի գատը մեվլանա Մուհյիտին եւ Իսթանպուլի գաիմ Մահմուտ Չելեպի, Հիճրեթի* 882[87] *տարւոյն զիլհիճճէ ամսուն սկիզբը* (1478 *ապրիլ*), *այսինքն Ֆաթիհ Մեհմետ Բ.ի մահէն երեք տարի առաջ, պատրաստած են Իսթանպուլի եւ Կալաթայի տուներուն եւ խանութներուն վիճակագրութիւնը:*

*Այս վաւերագրին մասին առաջին անգամ տեղեկութիւն տրուած է Իսթանպուլի* Վաթան *օրաթերթին* 28 *յուլիս* 1948*ի թիւին*

86 *Թ. Գուշակեան*, Ցուցակ... ի Սեբաստիա, *էջ* 54, *Թ.* 72: *Ա. Ալպօյաճեան*, Պատմութիւն Հայ-Կեսարիոյ, *էջ* 584. *այս յիշատակարանին վրայ հիմնուելով կը հաստատէ Հայերու տեղափոխութիւնը: Յիշատակարանը Թուական չի կրեր եւ ըսուած չէ թէ ո՛ւր գրուած է: Բայց հաւանական է որ Իսթանպուլ գրուած ըլլայ, ինչպէս կարելի է ենթադրել Ֆաթիհի կողմէ Հայերուն շնորհուած եկեղեցիներուն յիշատակութենէն եւ «հանապազ ի բերել ի ներս է» բառերէն: Քեֆէ գրաւուեցաւ* 1475*ին:*

87 *Հրատարակիչը անշուշտ անուշադրութեամբ Թուականը* 881 *կարդացած է:*

մէջ, իսկ բնագիրը, լատինական տառերով, եւ թարգմանութիւնը հրատարակած է Րըֆ-գը Մելուլ Մերիճ[88]:

Վիճակագրութիւնը կը ներկայացնէ հետեւեալ պատկերը·

## ԻՍԹԱՆՊՈԼ

Տուներու թիւ

| | |
|---|---|
| 8951 | Մահմետականի տուն |
| 3151 | Յոյնի տուն[89] |
| 1647 | Հրեայի տուն |
| 267 | Քեֆեցիի տուն[90] |
| 372 | Հայու տուն |
| 384 | Գարամանցի Հայերու տուն[91] |
| 31 | Գնչուի տուն |
| 14803 | |

Տուներու եւ խանութներու համագումար թիւ

| | |
|---|---|
| Տուներ եւ խանութներ | 18470 |
| Մահմետականներու, են տուներ | 14803 |
| Մահմետականներու, են խանութներ | 3667 |

---

88 Rifkı Melûl Meric, «Bir kaç muhim arşiv vesikaları» (Istanbul Enstütüsü Dergisi, III, s. 33—35). (1957) Ձեռագիրը Topkapı sarayi arşivi, No. 9524):

89 Nasranîyan «քրիստոնեայ» յորջորջուած են Յոյները:

90 Հրատարակիչը «Քեֆէլիւլեր»ը մեկնած է «Քեֆէցի մահմետականներ» (!):

91 Karamaniyân bâ şekl-i ermeni:

## ԿԱԼԱԹԱ

| | |
|---|---|
| 535 | Մահմետականի տուն |
| 592 | Յոյնի տուն |
| 332 | Եւրոպացիի տուն |
| 62 | Հայու տուն |
| 1521 | |

Տուներու եւ խանութներու համագումար թիւ

| | |
|---|---|
| *Տուներ եւ խանութներ* | 1781 |
| *Մահմետականներու, եւն. տուներ* | 1521 |
| *Մահմետականներու, եւն. խանութներ* | 260 |
| *Իսթանպուլի եւ Կալաթայի տուներուն եւ խանութներուն համագումար թիւն է* | 21251 |
| *Իսթանպուլի եւ Կալաթայի տուներուն թիւը* | 16324 |
| *Իսթանպուլի եւ Կալաթայի խանութներուն թիւը* | 3927 [92] |

[92] Վարթանի *հրատարակութիւնը մատչելի չէ ինծի։ Այդ հրատարակութեան հիման վրայ, վիճակագրութիւնը հրատարկուած է հետեւեալ ուսումնասիրութեանց մէջ,*

1) Alfonso Maria Schneider, «Die Bevölkerung Konstantinopels im XV. Jahrhundert» Nachrichten d. Akad. d. Wissensch. in Götingen. Phil.-hist. Kl., Jahrg. 1959, Nr. 9, S. 233—244: *Թուրքերէն թարգմ.* Belleten, No. 61 (1952), s. 35—48.

*Շնայտըրի ուսումնասիրութեան մէջ թիւերը կլորցուած են։ Հայոց տուները չեն յիշուած առանձին, այլ փոխուած են «Գարամանէն բերուած* 750 *տուն»ի։* 267 *տուն «Քեֆէլի»ները փոխուած են Ղրիմէն բերուած քրիստոնեաներ»ու։ Հաւանական է որ*

Ըստ այս վիճակագրութեան, 1478ի սկիզբը Իսթանպուլի եւ Կալաթայի մէջ կար·

| | | |
|---|---|---|
| 8951+535= | 9486 | տուն Մահմետական |
| 3151+592= | 3743 | տուն Յոյն |
| | 1647 | տուն Հրեայ |
| 372+384+62= | 817 | տուն Հայ |
| | 267 | տուն Քեֆեցի |
| | 332 | տուն Եւրոպացի |
| | 31 | տուն Գնչու |

Ենթադրելով — թէեւ այսպիսի ենթադրութեան մը համար բանաւոր պատճառ մը չկայ — որ Քեֆեցիներուն մէկ մասը, ըսենք կէսը, Հայ էր, Հայերուն թիւը դարձեալ հազիւ 1000 տունի պիտի հասնէր, 3743 տուն Յոյնի, 1647 տուն Հրեայի եւ 9486 տուն մահմետականի դէմ:

Իսթանպուլի մէջ կար 5554 տուն քրիստոնեայ եւ 8951 տուն մահմետական (համագումար 14305 տուն): Իսկ Կալաթայի մէջ 986 տուն քրիստոնեայ եւ 535 տուն մահմետական (համագումար՝ 1521 տուն): Իսթանպուլի եւ Կալաթայի տուներուն թիւը 16026 էր:

Այս վիճակագրութենէն դուրս մնացած են զօրանոցները եւ կրօնական հիմնարկու-

---

վիճակագրութիւնը այսպէս հրատարակուած ըլլայ Վաքանի մէջ:

2) Fr. Babinger, *Mahomet le Conquérant*, (Paris, 1954), p. 129 et 430:

3) Կալաթայի վիճակագրութիւնը՝ Halil Inalcık, Belleten, No. 93 (1960), s. 53, n. 29:

թիւնները, ինչպէս մետրեսէները, պավիյէները, վանքերը, որով Իսթանպուլի եւ Կալաթայի բնակիչներուն թիւը տուներու թիւին համաձայն հաշուել ուղիղ պիտի չըլլար: Ինչպէս սովորաբար կը հաշուուի, իւրաքանչիւր տունի մէջ եթէ 5 բնակիչ ենթադրուի, երկու քաղաքներուն բնակիչներուն թիւը կ՚ըլլայ 80,130: Բայց շատ հաւանական է որ, բաց ի յիշուած հիմնարկութեանց մէջ բնակողներէն, ոմանք ալ իրենց բնակութիւնը հաստատած ըլլան իրենց խանութին մէջ: Իւրաքանչիւր տունի մէջ 5 բնակիչ հաշուելը գիտական ոեւէ արժէք չունի, այնպէս որ 1478ի ատենները Իսթանպուլի եւ Կալաթայի բնակիչներուն թիւը ներելի է ենթադրել 100—120 հազար:

Այս վիճակագրութիւնը միանգամ ընդմիշտ կը հերքէ այն անհիմն հաւաստումը թէ Ֆաթիհ Մահմետ Բ. Կ. Պոլսոյ «Ջախջախիչ» կամ պարզ յոյն մեծամասնութիւնը հակակշռելու համար ստուարաթիւ Հայեր փոխադրած է քաղաքը: Ֆաթիհ մեծամասնութեամբ մահմետականներ, ասոնց գրեթէ մէկ երրորդին հաւասար Յոյներ եւ յարաբերաբար սակաւաթիւ Հայեր փոխադրած է Իսթանպուլ, առանց յիշելու քաղաքին շուրջը հաստատած մեծ մասամբ օրթոտոքսները:

Անշուշտ այս անհիմն հաւաստումը հերքելու համար այս աշխատութեան սկիզբն իսկ կարելի էր ներկայացնել վիճակագրութիւնը:

Սակայն, հաւանական է որ առարկուէր թէ վիճակագրութիւնը միայն երեք կամ չորս տարի առաջ հրատարակուած է, մինչ պատմագիրները տարիներ առաջ գրած են։ Ջանացինք ցոյց տալ թէ պատմագիրները եթէ, փոխանակ իրարմէ ընդօրինակելու, դիմէին ժամանակակից սկզբնաղբիւրներուն, այդ անհիմն եւ թիւր հաւաստումը ըրած պիտի չըլլային։ Ուզեցինք նաեւ ցոյց տալ անոնց, որ կ՚ըսեն թէ ամէն աւանդութիւն ճշմարտութեան բաժին մը կը պարունակէ, թէ այս հաւաստումն ալ ճիշտ չէ միշտ։

## Ե.

## ԿԱԼԱԹԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՂԵՐԸ ԸՍՏ ՖԱԹԻՀ ՄԵՀՄԵՏ Բ.Ի ՎԱԳՖԻՅԷՆՆԵՐՈՒՆ

Ֆաթիհի օրով Կալաթայի հայկական թաղերը, ինչպէս նաեւ հոն բնակող Հայերէն ոմանք յիշուած են Ֆաթիհի երեք վագֆիյէններէն երկուքին մէջ[93]։

Իրենց անուններով յիշուած են Ֆրենք Ֆիքրոնի թաղին մէջ հայ բժիշկ Նիքոլա (էջ 199, 200), հացագործ Փաւլո (էջ 199), դերձակ Սթեփեանո (էջ 200), Խոճա Կիր (էջ

93 Վագֆիյէններուն մասին տես Ayverdi, s. 3 n. 2, 3, 4։ Երեք վագֆիյէններէն երկուքին մէջ միայն կը գտնուին Հայոց վերաբերեալ տեղեկութիւնները նոյնութեամբ։ Տեսած եմ միայն Fatih Mehmet II Vakfiyeleri. (Türk Vakfiyeleri, No. 1). Ankara, 1938.

221), *Մանոլ Վերտի* (*էջ* 201), *հացագործ Անդրէաս* (*էջ* 214 *եւ* 241)։ *Այս անձերէն ոմանց անունով կոչուած են նաեւ թաղերէն ոմանք*։ *Այսպէս, կար* Մանոլ Վերտի մահալլէսի *մը*[94] (*էջ* 207), հացագործ Անտրէաս մահալլէսի մը (*էջ* 216)[94]։ *Մանոլ Վերտի եւ Ֆենավուճ յորջորջուած են «նասրանի», որ կը նշանակէ «քրիստոնեայ», բայց* 1478*ի վիճակագրութեան մէջ վերապահուած էր միմիայն Յոյներուն*։ *Կար նաեւ* Հայոց թաղ *մը* (էրմենիյան մահալլէսի) (*էջ* 220)[95], էրմենի Փաղմենո ( پاغمنو ) մահալլէսի *մը*[96] (*էջ* 213) եւ էրմենի Շատի պէյ մահալլէսի *մը*[97] (*էջ* 208), էրմենի (նասրանի) Ֆենավիւն մահալլէսի *մը* (*էջ* 191), էրմենի խոճա Կիր (*Կե՞ր, Քե՞ր*) մահալլէսի *մը* (*էջ* 221)։ Փափազօղլու մահալլէսին *կրնայ այնքան յունական որքան հայկական թաղ մը եղած ըլլալ*[98]։

---

[94] *Հայոց եկեղեցին այս թաղին մէջ էր* (Ayverdi, *էջ* 67)։

[95] Saint Benoît *եկեղեցիին արեւելեան կողմը* (Ayverdi, *էջ* 67)։

[96] Ayverdi *այս անունը կարդացած է* Yagomno։ *Այստեղ կը գտնուէր* Likoşna *եկեղեցին*, St. Benoît*ի կից* (*էջ* 69)։

[97] Saint Benoît *եկեղեցիին կից* (Ayverdi, *էջ* 67)։

[98] Ayverdi *կ'ըսէ թէ Հայոց եկեղեցին կը գտնուէր «Միխալլիլի Զողի մահալլէսի»ին մէջ։ Նոյնը կ'ըսէ նաեւ «Գալաֆաթճը* nasrani Psanle *մահալլէսի»ին համար* (*էջ* 68), *որուն կից էր «Գալաֆաթճը ըէխսի Քեսթինէ մահալլէսի»ն*։

Այս բոլոր անձերն ու Թաղերը յիշուած են Փաթիհի վագֆ բրած շինութեանց սահմանները ճշտելու առթիւ :

Ըստ երեւոյթին, այս «Թաղ»երը փողոցներ են :

Իբրեւ Հայ յիշուած բոլոր անձերը կը կրեն եւրոպականացած կամ յունական անուններ, ինչ որ կրնայ երկու ձեւով մեկնուիլ : Կա՛մ Կալաթայի Հայերը ապրելով մեծամասնութեամբ Եւրոպացիներէ եւ Յոյներէ բնակուած քաղաքամասի մը մէջ, իրենց անունները փոխած էին եւ կա՛մ կը պատկանէին կաթողիկէ Եկեղեցիին եւ առաւել կամ նուազ եւրոպականացած էին : Վերջին ենթադրութեան ի նպաստ կը թուին ըլլալ Անճոլելլոյի հետեւեալ տողերը · «Կան նաեւ Յունաց եկեղեցիներ եւ Հայոց եկեղեցիներ, ուր կրօնական արարողութիւնները կը կատարուին գրեթէ ինչպէս մեր մէջ · Նշխարը (Սրբութիւնը) կը բարձրացնեն եւ միւս արարողութիւնները կը կատարեն Իտալացիներու նման» :

# Կ. ՊՈԼՍՈՅ ՀԱՅ ՊԱՏՐԻԱՐՔՆԵՐՈՒՆ ԳԱՀԱԶԱՆԱԳԻՐՔԸ ԸՍՏ ՄԱՂԱՔԻԱ ԴՊԻՐ ԺԷՎԱՀԻՐՃԵԱՆԻ

1. — Զամչեան (Գ. 500) հետեւեալ կերպով կը պատմէ Կ. Պոլսոյ հայ պատրիարքութեան հիմնարկութիւնը.

«...սուլտան Մէհէմմէտ յառաջնմէ մինչդեռ ի Պրուսա էր, գութ ունէր ի վերայ ազգին Հայոց, եւ ի վերայ առաջնորդի տեղւոյն՝ որ կոչիւր Յովակիմ եպիսկոպոս... խոստացաւ նմա սուլտանն, եւ ասէ. եթէ յաջողեսցի ինձ առնուլ նաեւ զԿոստանդինուպոլիս՝ տարայց զքեզ անդ հանդերձ մեծամեծօք Հայոց, եւ արարից զքեզ գլուխ նոցա: Ապա իբրեւ էառ զայն, եւ հաստատեաց անդ զթագաւորութիւն իւր, յետ ամաց ինչ յորժամ դէպ եղեւ նմա գնալ ի Պրուսա, յիշեալ զխոստումն՝ զոր արարեալն էր, եբեր անտի ի Կոստանդինուպոլիս զՅովակիմ եպիսկոպոս հանդերձ քանի մի երեւելի տամբք Հայոց...»:

Զամչեան այս տեղեկութեանց իբրեւ աղբիւր յիշած է, լուսանցքին մէջ, «Յիշատ.» եւ «Պատմ.» բառերը, որոնք կը նշանակեն «Յիշատակարան» կամ «Յիշատակարաններ» եւ «Պատմութիւն», առանց ասոնց հեղինակներուն կամ աղբիւրներուն մասին տեղեկութեան:

*Չամչեանի Պատմութեան երրորդ հատորին հրատարակութեան թուականէն* (1786) *մօտաւորապէս* 140 *տարի ետք է որ, հանգուցեալ Բաբգէն վարդապետ (յետոյ աթոռակից կաթողիկոս Կիլիկիոյ),* 1924*ին* Հանդէս Ամսօրեայ*ի մէջ հրատարակեց «Կ. Պոլսի հայ պատրիարքութեան ծագումը, եւ առաջին պատրիարք Յովակիմ արքեպիսկոպոս» խորագրով յօդուած մը, ծանօթացնելով ձեռագրական անտիպ յիշատակարան մը, որուն համաձայն ըստ Չամչեանի Կ. Պոլսոյ առաջին հայ պատրիարք Յովակիմ* 1438*ին, այսինքն քաղաքին գրաւումէն* 15 *տարի առաջ, Կ. Պոլսոյ Հայոց եպիսկոպոսն էր: Այս տեղեկութիւնը, տարբեր Չամչեանի հաղորդածէն, գրգիռ մը պէտք էր ըլլալ հետաքրքրուելու համար թէ վենետիկեան պատմաբանը ի՞նչ աղբիւրներէ կրցած էր օգտուիլ, սակայն ոչ ոք ունեցաւ այս հետաքրքրութիւնը*[1]:

2. — *Երուսաղէմի Սրբոց Յակոբեանց վանքին ձեռագիրներու ցուցակին չորրորդ հատորին մէջ*[2], *Թ.* 438 *ձեռագրէն (Ժողո-*

---

[1] *Տարիներ առաջ պատմաբան հանգուցեալ Հ. Սահակ Տէր Մովսէսեան այս մասին իրեն ուղղած հարցումիս պատասխանեց թէ «Չամչեան այնքան հանճարեղ մարդ մըն էր որ անշուշտ աղբիւր մը ունեցած էր»: Իբրեւ թէ խնդիրը աղբիւր մը ունեցած ըլլալուն վրայ ըլլար...:*

[2] *Նորայր եպս. Պողարեան,* Մայր Ցուցակ Ձեռագրաց Սրբոց Յակոբեանց: *Չորրորդ հատոր: Երուսաղէմ,* 1956, *էջ* 381:

*վածոյ ԺԸ դարու) հրատարակուած է հետեւեալ հատուածը.*

Թուին Հայոց 910 (=1461) Յովակիմ եպս. զոր ի Պրուսայու հանդերձ ժողովրդովք բերեր Ֆէթիհ Սուլթան Մէհէմմէտն ի Կոստանդնուպօլիս:

*Նոյն ձեռագրատան թ.* 462 *ձեռագիրէն ալ (ժողովածոյ, ԺԸ, ԺԹ դար) հրատարակուած է հետեւեալ հատուածը.*

Յովակիմ եպիսկոպոս ՋԺ (= 1461) ի Պրուսայու ժողովրդօք բերէ սուլթան Մէհէմէտ... (*շարունակութիւնը չէ հրատարակուած*):

*Այս երկու հատուածներն ալ՝ քաղուած Կ. Պոլսոյ հայ պատրիարքներուն գաւազանագիրքերէն՝ թէեւ շատ համառօտակի՝ կը համապատասխանէին Չամչեանի հաղորդած տեղեկութեանց մէկ մասին։ Հետեւաբար, Չամչեանի աղբիւրներէն մէկը Երուսաղէմի գաւազանագիրքերը կամ անոնցմէ մէկը կրնային եղած ըլլալ։*

*Տոքթ. Վ. Յ. Թորգոմեան*[3] *կը վկայէր թէ Վենետիկ տեսած էր Մաղաքիա Ծէվահիրճեանի մէկ անտիպ գործը՝* Գաւազանգիրք Կաթողիկոսացն Հայոց: *Աւելի քան հաւանական էր ուրեմն որ պատրիարքներուն գաւազանագիրքն ալ Մաղաքիա Ծէվահիրճեանի գործը եւ Չամչեանի աղբիւրը կամ աղբիւրներէն մէկը եղած ըլլար։ Չամչեան*

---

[3] *Երեմիա Չելեպի Քէօմիւրճեան,* Ստամպօլոյ Պատմութիւն, *Բ., էջ* 816։

ինքն իսկ կը վկայէ թէ Մաղաքիայի անտիպ գործերէն օգտուած է։ Երեմիա Չելեպի Քէօմիւրճեանի անտիպ աշխատութիւնները, կը գրէ, «ըստ մեծի մասին անկան ի ձեռս մտերիմ ծանօթի նորա Ճէվահիրճի տիրացու Մաղաքիայի, որ եւ յետ նորա գտաւ նման նմին հետամուտ գրոց, եւ ինքն եւս չարագրեաց բազում ինչ, ընդ որս գրեաց ստուգութեամբ եւ զանցս իւրոյ ժամանակի»[4], եւ անոր ձեռագիրներէն օգտուելով խմբագրած է իր Պատմութեան 724—762 էջերը։ (Գ. 723)։

3. — Շնորհիւ Տ. Շահէ վարդապետ Աճէմեանի բարեացակամութեան, Երուսաղէմէն ստացայ միքրոֆիլմները այն երկու գաւազանագիրքերուն որոնցմէ քաղուած էին վերոյիշեալ հատուածները։ Ասոնցմէ մէկը ընդարձակ էր։ Մեքենագրուած ընդօրինակութիւնը Վենետիկի Մխիթարեանց ձեռագրական տեսուչ Հ. Քերովբէ Չրաքեան ազնուօրէն համեմատեց իրենց երկու համանման գաւազանագիրքերուն հետ եւ տարբերութիւնները նշանակեց։ Համեմատութեան արդիւնքէն երեւան ելաւ որ Վենետիկ ալ համառօտ եւ ընդարձակ երկու խմբագրութիւն ունի նոյն գաւազանագիրքին։

Գաւազանագիրքին հրատարակութեան առթիւ անհրաժեշտ նկատեցի ունենալ Վենետիկի ձեռագիրներուն ալ միքրոֆիլմները։

4 Սորագծումը իմս է։ Չամչեան «ստուգութեամբ» գրուած նկատած է միայն Մաղաքիայի ժամանակակից դէպքերուն պատմութիւնը։

*Դժբախտաբար, Հ. Քերովբէ Չրաքեան, անհիմն պատճառաբանութեամբ մը, մերժեց այս խնդրանքս: Ստիպուած եմ, հետեւաբար, գոհանալ Երուսաղէմի լուսանկարներով եւ Հ. Չրաքեանի համեմատութիւններով:*

4. — *Մինչեւ հիմա ծանօթ են ուրեմն, Կ. Պոլսոյ հայ պատրիարքներու գաւազանագիրքին հետեւեալ չորս ձեռագիրները·*

*Վ 1, Վենետիկ Ժմրագիր Զ, Թ. 2: Այս ձեռագիրը նոյն ինքն Մաղաքիա Ճէվահիրճիի սեւագրութիւնն է եւ կը կրէ հետեւեալ խորագիրը·*

Կարգ գաւազանագրութեան կաթուղիկոսացն Հայոցս եւ պապանց Հռոմայեցոց եւ պատրիարգացն Յունաց եւ պատրիարգացն Հայոց Կոստանդնուպոլսոյ· ժողովեցեալ եւ շարադրեցեալ ի նուաստ եւ չնչին ծառայէ Մաղաքիա դպրիս Կ. Պօլսեցւոյ, ի Կ. Պօլիս, ի փառս ամենամեծին Աստուծոյ ՌՃԿԲ (= 1713):

*Վ 2, Վենետիկի ձեռագիր Մաղաքիա Ճէվահիրճիի*[5] *որդւոյն Սողոմոնի*[6] *ընդօրի–*

---

5 *Մատթէոս վրդ. Մաղաք—Թէոփիլեանց,* Կենսագրութիւն Երեւելի Արանց, *Բ, էջ* 715 (*Վենետիկ,* 1839) *հետեւեալ տեղեկութիւնները տուած է Մաղաքիա Ճէվահիրճեանի մասին. «Կայ եւ այլ ոմն Մաղաքիա դպիր ասացեալ Կոստանդինուպօլսեցի, որ է նախահաւն ըստ մարմնոյ, որոյ պապն Թորոս՝ փոխադրեալ էր անդր ի Կոստանդինուպօլիս կամ յաւէտ որդի նորա Գրիգոր ի Շէնգուշ գեղջէ կողմանցն Տիարպէքիրու, որ ծնաւ զՄաղաքիա ի քաղաքի անդ:*

*նակութեամբ եւ մասամբ նոր խմբագրութեամբ եւ յաւելումներով։ Խորագիրն է․*

Գաւազանագիրք կաթողիկոսացն Հայոց եւ պապաց Հռոմայեցոց․ եւ պատրիարգացն Կ․ Պօլսոյ Հայոցս եւ պատրիարգացն Յունաց։ Արտահանեալ ի հինգ պատմագրչացն Հայոց, հաւաքեալ եւ շարադրեալ ի նուաստէ չնչին ծառայէ Մաղաքիա դպրէ Կ․ Պօլսեցոյ Ճեւահիրենոյ։ Ի փառս ամենամեծին Աստուծոյ, յամի 1713 եւ Հայոց ՌՃԿԲ։ Յորմէ յօրինակեցաւ սայ ի բուն շարադրութենէն Մաղաքիայի, ձեռամբ որդւոյ նորա Սողոմոն դպրի, ի գրօսանս Հայկազնեայց։

Յամի տեառն 1753 եւ Հայոցս ՌՄԲ սեկտեմբերի ԺԱ (11) ի Կոստանդնուպօլիս։

---

*Ունի եւ այս Մաղաքիա զհատուկտոր գրուածս ինչ, եւ զպատմութիւն տէրութեան Օսմանցւոց յաւուրս իւր»։ Իսկ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի մասին խօսելու ատեն կը գրէ․ «…Ուրեք ուրեք տեսանի եւ ձեռագիր Մաղաքիայ դպրի մտերիմ բարեկամի նորա․ առ որում մնացին այս գրուածք նորա յետ մահու նորին Երեմիայ։ Եւ ապա միջնորդութեամբ Թոռին նորա Տ․ Յարութիւն վարդապետին՝ միոյ ի միաբանից ուխտիս մերոյ, եւ հօրեղբօրն իմոյ ըստ մարմնոյ, հասին այս ամենայն ի վանս մեր։ (Անդ, Ա, էջ 241)։ Տես նաեւ Հ․ Աճառեան,* Հայ Անձնանունների բառարան։ *Մաղաքիայի Օրագրութենէն երկու հատուած հրատարակուած է* Բանասէր (*Փարիզ*, 1903, *էջ* 205 *եւ* 206) *Կ․ Պոլսոյ առաջին հայերէն տպագրութեանց մասին*)։

[6] *Եւ ոչ աղջիկը, ինչպէս գրած է Թորգոմեան* (*Անդ*)։

Մաղաքիա դպրի Կ. Պոլսոյ հայ պատրիարքներու գաւազանագիրքին սկզբնաւորութիւնը (Ձեռագիր Երուսաղէմի, Թ. 438 ե 1)

*Է 1, Երուսաղէմի Թ. 438 ձեռագիր,* (*էջ* 381—385), *հետեւեալ խորագրով.*

Կարգ եւ թիւ պատրիարգացն Հայոց, որ նստան ի Կոստանդնուպօլիս մի զկնի միոյ, զկնի առմանն մեծի քաղաքիս ի Տանկաց:

*Նօտրգիր: Պատրիարքներուն գահակալութեան թուականները եւ կարգը նշանակուած են արաբական թուանշաններով:*

*Է 2, Երուսաղէմի Թ. 462 ձեռագիր,* (*էջ* 159—162), *հետեւեալ խորագրով.*

Պատրիարգունք կոստանդինուպօլսոյ հայոց:

*Նօտրգիր: Նշանակուած են միայն գահակալութեանց թուականները հայկական տոմարի թուանշաններով:*

*Ինչպէս կը տեսնուի, չորս գաւազանագիրքերուն խորագիրները տարբեր են իրարմէ: Մաղաքիայի որդի Սողոմոնի «ի* բուն *չարագրութենէն Մաղաքիայի» կատարած ընդօրինակութիւնը ենթադրել պիտի տար թէ Մաղաքիայի սկզբնագրին հարազատ ընդօրինակութիւնն է, եթէ «բուն» բառով ըսել ուզած չըլլայ թէ իր օրով հօրը ձեռագրէն ուրիշ ընդօրինակութիւններ ալ կային որոնք հարազատ չէին, եւ կամ թէ հայրը առաջին գաւազանագիրք մը պատրաստելէ ետք զայն վերամշակած էր, եւ այս վերջին խմբագրութիւնն էր միայն «բուն»ը: Սակայն Վենետիկի երկու ձեռագիրներուն համեմատութիւնը ցոյց կու տայ թէ Սողոմոնի գաւազանագիրքը Մաղաքիայի սեւագրութենէն*

զգալի տարբերութիւններ ունի, եւ մինչեւ որ Մաղաքիայի ինքնագիր ուրիշ մէկ գաւաղանագիրքը չգտնուի, իր անունով հասած սեւագրութիւնն է որ իր սկզբնագիրը պէտք է համարիլ։

Սողոմոնի ձեռագիրը (Վ 2) կը թուի գրեթէ նոյնութեամբ համապատասխանել Ե 2ին։ Ըստ Հ. Գ. Զարբհանալեանի համեմատութեան, Սողոմոնի յաւելումներուն բարձումով մնացած բնագիրը պէտք է ներկայացնէ Մաղաքիայի սեւագրութիւնը։ Այս վերապահումով կը գործածեմ «Մաղաքիայի սեւագրութիւն» բառերը։

Ե 1 բաւական նման ըլլալով հանդերձ Մաղաքիայի սեւագրութեան, ունի թէ՛ խմբագրական եւ թէ ուրիշ քանի մը տարբերութիւններ։

Ինչպէս կը տեսնուի խորագիրներուն համեմատութենէն, Սողոմոն 1753ին աւարտած է, ըստ իր յայտարարութեան, այն գաւաղանագիրքը զոր հայրը աւարտած էր 1713ին։ Սակայն, Սողոմոն ոչ միայն խորագրին այլ եւ բնագրին մէջ յաւելումներ ըրած է, առանց յիշելու թուականներու քանի մը տարբերութիւններ։ Արդեօք 1713ի եւ 1753ի միջեւ Սողոմոն ուրիշ աղբիւրնե՞ր գտած էր, որոնք իր հօրը մատչելի չէին եղած։ Եւ յետոյ, որո՞նք էին «Հայոց հին պատմագրիչ»ները, որոնք, բաց ի կաթողիկոսներու յաջորդականութեան ցանկերէն, Պոլսոյ պատրիարքներուն մասին ալ

տեղեկութիւններ տուած էին։ Այս հարցումներուն կարելի չէ պատասխանել մեր ծանօթութեանց ներկայ սահմանին մէջ։

Չամչեանի աղբիւրներէն մէկն է միայն Սողոմոնի գաւազանագիրքը։ Իր միւս աղբիւրները դեռ անծանօթ կը մնան։ Նոյն իսկ Կ. Պոլսոյ հայ պատրիարքներուն ցանկը, զոր հրատարակած է իր Պատմութեան երրորդ հատորին կցուած ժամանակագրութեան մէջ (էջ 113), տարբերութիւններ կը ներկայացնէ։

Կը հրատարակեմ Սողոմոնի պատրաստած գաւազանագիրքը։ Արամեան տառերով տպագրուած բառերը Սողոմոնի յաւելումներն են, իսկ մնացեալ մասերը ենթադրաբար Մաղաքիայի սեւագրութեան կը համապատասխանեն։ Պատրիարքներուն անուններէն առաջ դրուած արաբական թուանշանները իմ կողմէս աւելցուած են։ Սղուած բոլոր բառերը ընդլայնուած են եւ նոյնութեամբ պահուած է ուղղագրութիւնը եւ կիտադրութիւնը։

# ՄԱՂԱՔԻԱ ԴՊԻՐ ՃԷՎԱՀԻՐՃԻ

# ՊԱՏՐԱՐԳՈՒՆՔ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍՈՅ ՀԱՅՈՑ

Ձեռագիր Երուսաղէմի թ· 462 ժողովածոյ (ԺԸ – ԺԹ· դար) (Տես Ցուցակ··· Երուսաղէմի Դ, էջ 186—187)

1· *Յովակիմ եպիսկոպոս ջժ ի պրու–սայու ժողովրդօք բերէ սուլթան մէհէմէտ ֆէթլ անողն ստամպօլու* զոր յառաջագոյն խոստացեալ էր նմա թէ առնիցէր ստամպօլ եւ տարցէ նա անդ:

2· *Նիկողայոս եպիսկոպոս ջիէ թվին հայոց*:

3· *Կարապետ եպիսկոպոս ջլը*:

4· *Մարտիրոս եպիսկոպոս ջծը*:

5· *Գրիգոր եպիսկոպոս ջհէ եղբօր որդի զաքարիայ կաթողիկոսի էջմիածնայ*:

6· *Աստուածատուր վարդապետ ջճղ աշակերտ մաղաքիեայ*:

7· *Ստեփաննոս վարդապետ ջղթ*:

1· Ե 1 Յովակիմ եպիսկոպոս ի Պրուսայու հանդերձ ժողովրդովք եբեր Ֆէթիհ սուլթան Մէհէմմէտն ի Կոստանդնուպօլիս: *Չիք* զոր··· անդ:

2· *Չիք* թվին Հայոց:

5· Ե 1 *Չիք* եղբօր··· էջմիածնայ:

6· *Չիք* աշակերտ Մաղաքիայի:

7· Ե 1 997 փխ· ՋՂԹ (= 999):

8· *Տիրատուր կաթողիկոս սըսա*[1] *ու թվին Յակոբ վարդապետ ռժէ:*

9· *Յովհաննէս եպիսկոպոս ամթեցի*[2] *ռիբ:*

10· *Թումայ եպիսկոպոս պաղատացի ռլ որ ի հարսանիս սուլթան մուրատին գնաց:*

11· *Սարգիս եպիսկոպոս զէյթունցի ռլգ:*

12· *Յոհաննէս եպիսկոպոս ռլթ:*

13· *Ազարեայ կաթողիկոս սըսայ*[3] *ռխ:*

14· *Սարգիս եպիսկոպոս ռխա:*

15· *Մելքիսեթ կաթողիկոս էջմիածնի ռխը:*

16· *Գրիգոր վարդապետ կեսարացի ռծ:*

17· *Խուլ յովանէս*[4] *վարդապետ ստամպօլցի: ռծթ:*

18· *Գրիգոր կեսարացի դարձեալ*[5] *ռկ:*

19· *Խուլ յովանէս*[4] *վարդապետ դարձեալ ռհ:*

8· Ե1 Յակոբ եպիսկոպոս 9րդ պատրիարքն է: || Վ2 *ՌԺԲ* փխ. *ՌԺէ*:
10· Ե1 սա գնաց ի հարսանիսն:
12· Ե1 1038 փխ. ՌԼԹ (= 1039):
16· Ե1 1054 փխ. ՌԾ (= 1050):
17· Ե1 բատամպօլցի խուլ կոչեցեալ:
18· Ե1 1061 փխ. ՌԿ (= 1060):
19· Ե1 1066 փխ. ՌՀ (= 1070):

---

[1] *Ե1 Սըսայ:*

[2] *Ա1 Համթեցի:*

[3] *Ե1 Սըսայ:*

[4] *Ե1 Յոհաննէս:*

[5] *Ե1 կրկին փխ. դարձեալ (յաջորդ տողերուն մէջ ալ):*

20· *Գրիգոր կեսարացի դարձեալ ռհբ:*

21· *Զաքարեայ վարդապետ վանեցի ռհե:*

22· *Խուլ յովանէս*[4] *դարձեալ ռհը:*

23· *Զաքարիեայ դարձեալ ռձե:*

24· *Դաւիթ եպիսկոպոս յարեւելցի*[6] *ռձը:*

25· *Կիրակոս վարդապետ յարեւելցի*[6] *ռղ:*

26· *Խաչատուր վարդապետ սեբաստացի աշակերտ ուրհայեցոյ ռղա:*

27· *Դաւիթ եպիսկոպոս դարձեալ ռղդ:*

28· *Աթոռակալք* այսինքն աշխարհականք ոչ գոյ թիւն:

29· *Դաւիթ եպիսկոպոս դարձեալ ռղէ:*

30· *Աթոռակալք դարձեալ:*

31· *Եղեազար վարդապետ կամօք*[7] *աթոռակալացն առաջնորդ ռղթ:*

32· *Յովանէս վարդապետ մուղնեցի կամօք փիլիպոս կաթողիկոսի առաջնորդ ռճա:*

20· Ե1 1070 փխ· ՌՀԲ (= 1072):
26· Ե1 *Չիք* աշակերտ ուրհայեցոյ:
27· Ե1 արեւելցի կրկին նոյն ամին || 1091 փխ· ՌՂԴ (= 1098):
28· Ե1 *Չիք* այս··· թիւն || 1093:
29· Ե1 *Չիք* եպիսկոպոս || Ե1 Վ1 1099 փխ· ՌՂԷ (= 1097):
30· Ե1 աթոռակալք կրկին ի նոյն ամին 1099:
31· Ե1 *Չիք* առաջնորդ || ի նոյն ամին:
32· Ե1 *Չիք* առաջնորդ:

---

6 *Ե1 արեւելցի:*

7 *Ե1 կամօքն:*

33· *Աթոռակալք դարձեալ*:

34· *Թումայ վարդապետ Հալէպցի ռճգ զոր սպանին աթոռակալք*[8] ի մէջ բանտին:

35· *Մարտիրոս վարդապետ Քէֆէցի ռճը մայիսի*:

36· *Ղազար վարդապետ սեբաստացի ռճթ նոյեմբերի*:

37· *Յոհանէս վարդապետ Թութունճի ռճժբ*:

38· *Սարգիս վարդապետ Թէքիրտաղցի ռճժդ*:

39· *Յոհանէս վարդապետ Թութունճի դարձեալ ռճժդ*:

40· *Սարգիս վարդապետ դարձեալ ռճժդ*:

41· *Ստեփաննոս վարդապետ մեղրեցի ռճժթ*:

42· *Յոհաննէս երէց սամաթեացի Թոփալ ռճիդ*:

33· Ե 1 1103:
34· Ե 1 Մարտիրոս վարդապետ Քէֆէցի զոր յիշէին ի պատարագին ի սուրբ Աստուածածին եկեղեցին մինչ յայրիլն· որոյ ի մեծ եաղունին պատճառ եղեալ էր ազատմանն քաղում փողս մսղելով ողորմութեամբն Աստուծոյ || Չիք մայիսի:
36· Ե 1 *Չիք* նոյեմբերի:
39· Ե 1 թիւթիննին կրկին:
40· Ե 1 Սարգիսն կրկին:
41· Չիք Մեղրեցի:
42· Ե 1 Վ 1 Ամասիացի փխ· Սամաթիացի: (Չիք թոփալ):

---

[8] Ե 1 *աթոռակալքն*:

43. *Անդրէաս երէց ստամպօլցի մակա–նուամբ ճիհենեմ ներտիվէնի ռճիդ* :

44. *Կոստոյ*[9] *երէց կեսարացի քէՖէցի մարտիրոսի փողովն ռճիէ* :

45. *Սարգիս աշխարհական* սա ի բանակն օսմանցոց հացագործ լինելով առնու զպատ–րիարգութիւնն եւ գայ ի ստամպօլ եւ յետոյ լինի երէց եւ ի գլուխ դասին կանգնե[ա]լ սաէ ժողովրդեան ես ձեզ տի մեղաց սրբեմ ռճիը :

46. *Կրպօ երէց*[10] *դարձեալ մարտիրոս վարդապետն սեւագլուխ արար զնա ռճիթ* :

47. *Թորոս երէց ի օր ռճլ մայիսի* :

48. *Կրպօ դարձեալ ռճլ դեկտեմբերի իդ. եղիազարն եպիսկոպոս արար զնա* :

49. *Եփրեմ վարդապետ արեւելցի ռճլգ օգոստոսի ժե* :

50. *Թորոս երէց*[10] *դձլ ռճլգ* :

51. *Խաչատուր երէց*[10] *ճլեցի ռճլէ յուն–վարի* :

43. Ե 1 կոչեցեալ ճիհէննէմ մէրտիվէնի :
44. Ե 1 *Ձիք* Քէփէցի Մարտիրոսին փողովն :
45. Ե 1 Վ 1 աշխարհական որ յետոյ երէց եղեւ եւ մեռաւ :
46. Ե 1 *Ձիք* Կրպօ երէց Մարտիրոս վարդապետն սեւագլուխ արար զնա ՌՃԻԹ :
47. Ե 1 *Ձիք* մայիսի :
48. Ե 1 յՆղիազարու եպիսկոպոս եղեւ || Ձիք դեկ–տեմբերի ԻԴ :

---

[9] Ե 1 *Կրպօ* :
[10] Ե 1 *Էրէց* :

52. *Կրպօ դարձեալ ոճլէ օղոստոսի :*

53. *Թորոս երէց*[10] *աշխարհականոք մէքիլ*[11] *ոճլէ դեկտեմբերի :*

54. *Սադայ օղլի*[11] *դերձակ աշխարհականօք ոճլր :*

55. *Ծահին համամճի մէքիլ էրիցոք ոճխ :*

56. *Մաթէոս*[12] *վարդապետ կեսարացի մականուամբ սարի որ յետոյ կաթողիկոս եղեւ սրսա*[3] *եւ ոճծէ թվլին եղեւ առաջնորդ երուսաղէմի եւ զկնի ճիալոյ ի քուրեկն զոր ուրացաւ եւ փախեաւ ի հռոմ : ոճխա :*

57. *Եփրեմ* վարդապետ յարեւելցի դարձեալ *ոճխղ :*

58. *Մելքիսէթ վարդարպետ սուփհի անւանէին ոճխղ :*

51. Ե 1 ծիլեցի յըստամպօլս || Չիf յունվարի :
52. Ե 1 Կարապետն փխ. Կրպօ || ի նոյն ամին փխ. օգոստոս :
53. 1Ե 1 վէգիլ ի նոյն եւ մին :
56. Ե 1 Վ. 1 ՌՃԾԻն փխ. ՌՃԾԷ թվին || Ե 1 սորը կոչեցեալ || պատրիարգ փխ. առաջնորդ եւ յետոյ ի fիւրէկն եղին եւ ապա ուրացաւ եւ փախեաւ ի Հռովմն փխ. զկնի... Հռոմ || Վ. 1 *կ՚աւելցնէ.* եւ անդ վախճանի :
57. Ե 1 *Զիք* վարդապետ արեւելցի || Եփրեմն կրկին փխ. Եփրեմ :
58. Ե 1 Սուպհի՝ որ է շայիր || 1147 փխ. ՌՃԽԶ (1146) մայիսի Զին :

---

11 *Ե 1 սախայ օղլու :*

12 *Ե 1 Մատծէոս :*

59․ *Մխիթար*[13] *վարդապետ քուրտուս-տանցի ոճխը*։

60․ *Սուփհի դարձեալ ոճխթ դեկտեմ-բերի դ*։

61․ *Եփրեմ դարձեալ ոճծ սեպտեմբերի ա*։

62․ *Աւետիք վարդապետ եզնկացի առնու հրամանաւ եւ իշխանութեամբ մուֆտուն տաճկաց ի միասին եւ զերուսաղէմ ոճծա*։

63․ *Գալուստ վարդապետ կայծակ կո-չեցեալ ոճծր*։

64․ *Ներսէս վարդապետ ստամպօլցի ոճծր*։

65․ *Աւետիք վարդապետ դարձեալ ի միասին եւ զԵրուսաղէմ ոճծզ*։ զոր փրանկք յափշտակեալ տարին զնա ի հռոմ եւ անտի ի մալթա եւ անդ մեռնի։

66․ *Մարտիրոս վարդապետ մականուա-*

59․ Ե 1 Վ 1 *կ'աւելցնեն* յուլիսի ԻԳին։
60․ Ե 1 Մելքիսէթ Սուպհին փխ․ Սուփհին։
62 Ե 1 զԵրուսաղէմն ի միասին էառ փետրվարի մէ-կին փխ․ առնու․․․ եւ զԵրուսաղէմ։
64․ Ե 1 Պալատցի փխ․ Ստամպօլցի || *կ'աւելցնէ*․ սա յետոյ եղեւ առաջնորդ Պրուսայու, մեռաւ եւ թա-ղեցաւ անդ || 1153 փխ․ ՌՃԾԲ (= 1152)։
65․ Ե 1 *Չիք* վարդապետ․․․ մեռեանի || ի նոյն ամին (1153)։
66․ Ե 1 Մարտիրոս վարդապետ Երզնկացի, քիւլ

[13] Ե 1 *Մըխիթար*։

[14] Ե 1 *քիւրտիստանցի*։

*նուամբ քուլխանձի կոչիւր եւ եղեւ եպիսկոպոս ի վեր ստամպօլոյ ի մաթէոս կաթողիկոսէն սըսոյ աստուածածին եկեղեցին ռճծե :*

67· *Միքայէլ երէց լինելով փոխանորդութիւք վարդապետի եւ* նա էր ի մալդայ ի բանտին *զմարտիրոս վարդապետն եւ զմաթէոս կաթողիկոսն եղին ի դի ռճծե :*

68· *Սահակ վարդապետ ակնցի ի միասին եւ զերուսաղէմ յունվարի իբ :*

69· *Յովհաննէս վարդապետ իզմիրցի* սա ետ գլխատել զտէր կոմիտասն եւ զոմանս տանկացոյց եւ ինքն փախեաւ ի մէջ պատրիարգութեան եւ ապա չարամահ սատակեցաւ *ռճծզ :*

70· *Սահակ վարդապետ դարձեալ ի միասին եւ զերուսաղէմ ռճծէ :*

71· *Յովհաննէս վարդապետ յարեւելցի որ է կէնճեցին ի միասին եւ զերուսաղէմ ռճկզ :*

հանենի կոչեցեալ, փետրվարի ԺԱ· սա եղեւ եպիսկոպոս Ստամպօլ կաթողիկոսէն Սըսոյ ի վերայ Ստամպօլու. փխ· Մարտիրոս··· եկեղեցին || Վ. 1 կոչիւր փետրվար ԺԱ:

67· Ե 1 խարբերթցի Միխայէլ էրէց նստաւ վէքիլ Աւետիք վարդապետին համար· զՍարբն եւ զՄարտիրոսն եղին ի թին փխ· Միքայէլ··· ի դի:

68· Ե 1 *Ջիք* ի միասին եւ զերուսաղէմ: Ե 1 Վ. 1 *կ'ա*ւելցնեն 1156 = ՌՃԾԶ:

69· Վ. 1 Իզմիրցի ի միասին Երուսաղէմ ապրիլ ԻԲ: Ե 1 Ջիք սա ետ··· սատակեցաւ:

71· *Ջիք* յարեւելցի որ է || Ջիք ի միասին եւ զերուսաղէմ || *կ'աւելցնէ* մարտի ԻԶին:

72· *Յովհաննէս վարդապետ բաղէշցի· ռճկդ սեպտեմբերի*[15] *է·* որ չէր եպիսկոպոս, եւ կարապետ կաթողիկոս (որ յստամպօլ ի կաթողիկոսութիւն օծեցաւ սուրբ էջմիածնի) ձեռնադրեաց զյոհաննէս վարդապետ եպիսկոպոս ի սուրբ աստուածածնի եկեղեցին։ *Յաւուրս սորա եւ աշխատութեամբ սորին կրկին բաժանեցաւ պատրիարքութիւն երուսաղէմի ի ստամպօլոյ եւ յաւուրս սորա լաթինք հրաման առին նորոգելոյ զտաճարն սրբոյ յարութեան· սա եւս բարի նախանձ չարժեալ մեծաւ ջանիւ էառ հրաման ի թագաւորէն նորոգել եւ զբաժինն մեր սրբոյ յարութեան նմանապէս եւ սորին աշխատութեամբ նորոգեցան ամենայն եկեղեցիքն ըստամպօլ սուրբ աստուածածնի սուրբ գէորգայ* սուրբ հրեշտակապետու *եւ լուսաւորչի ի սրբոյ։*

72· Ե 1 (*լուսանցքին մէջ*) որ չէր··· եկեղեցին։ Վ 1 եւ Վ 2 *չունին այս տողերը*։ Ե 1 սա դարձեալ բաժանեաց զԵրուսաղէմն ի Ստամպօլոյ եւ բազում բարեաց պատճառ եղեւ· եւ եղեւ եպիսկոպոս ի Ստամպոլոյ Զէյթունցի Կարապետ կաթողիկոսէն ՌՃՀԵ թուին։ ամսոյն փետրվարի Իէ· յերկրորդում կիւրակէի աւագ պահոցն· եւ վախճանեցաւ սա ՌՃՁ թուին, փետրվար ԺԳ, եւ թաղեցաւ ի դամբարանի սուրբ Լուսաւորիչ եկեղեցին Ղալաթիայ որ է հանդիպակաց մեծ Խաղախիս || Վ 1 Ս· Գէորգ*այ բառերէն ետք կ'աւելցնէ*· Սուլու Մանաստըր կոչեցեալն ի ՌՃՁԲ թվին փխ· Ս· Հրեշտակապետու։

[15] *Ե 1 սեպտեմբերի*։

Այս տեղ կը վերջանայ Վ. 1 :

Այլ եւ յաւուրս սորա տարածեցաւ գիտութիւն ազգիս հայոց. ստացաւ եւ բազում աշակերտս որ ամենեքեան եղեւ ուսուցիչք եւ բանիբունն վարդապետք այլ եւ ետ թարգմանել զբազում գրեանս ի լատինացոց առ հայս : Այլ եւ ձեռնատուութեամբ սորին ազատեցաւ սուրբ յակոբ ի յանիհուն պարտուց, արար եւ զայլ ուղղութիւնս բազումս եւ զի էր բարուքն անարծաթասէր, վարուքն պարկեշտ գիտութեամբ եւ վարդապետութեամբ կարի ճոխ կացեալ ամս իզ ի պատրիարգութեան իւրում յաթոռոջ եւ վախճանի :

73. *Յակոբ վարդապետ զմառեցի*[16] *աշակերտ յոհաննիսի բաղէշցոյ ոճղ սա եւս էր յոյժ գիտուն եւ բանիբուն արար գրեանս բազումս զվէմ հաւատոյ կոչեցեալն քրիստոնէական ուսանելիքն զմեկնութիւն նարեկի եւ զմեկնութիւն սիրաքայ եւ զայլս ոմանս մասնաւորաբար :*

74. *Պրոխորոն վարդապետ սոփեացի նուիրակ երուսաղէմի ոճղզ, բայց ոչ հաւանութեամբ իշխանացն եւ զկնի է աւուր հանին զնա ի պատրիարգութենէ :*

73. Ե 1 նորին աշակերտ փետրվարի ժԵին փխ. աշակերտ... մասնաւորաբար :

74. Ե 1 Ուռուսճուխցի փխ. Սոփիացի || սուրբ Երուսաղէմի է (7)ն օր փխ. բայց ոչ... պատրիարգութենէ || 1198 փխ. ՌՃՂԶ (= 1196) :

[16] Ե 1 *Զըմառացի :*

75· Մինաս վարդապետ ակնցի որ էր առաջնորդ մշոյ սուր կարապետի ռճղը հրաւիրակօք բերեն զնա ի ստամպօլ եւ առնեն զնա պատրիարքն եւ յետոյ կաթողիկոս ռմ թուին :

76· Գէվորք վարդապետ յարեւելցի յերկրէն ղափանցի որճ թվին սա էր վէքիլ մինաս վարդապետին որ յետոյ կաթողիկոս եղեւ սուրբ էջմիածնի եւ զգէվորք վարդապետն եղին ի տեղի նորա պատրիարգ էր սա քաղաքավար եւ մարդաշահ եւ կարդաւորասէր(?) եւ ողորմած առ աղքատսն եւ շահեցող զամենսին ըստ կարգ իւրեանց :

77· Յակոբ վարդապետ զմառեցի դարձեալ ումա մայիսի ժէ թողեալ զպատրիարգութիւն երուսաղէմի ի վերայ թորոսի եւ ինքն եկն ի կոստանդինուպօլիս ,

Ե 2 կը վերջանայ այստեղ : Բայց Վ 2 կը շարունակէ · որ այժմ կայ եւ վարէ Աստուած

75· Ե 1 սա առաջնորդ էր Մշու սուրբ Կարապետոււ, որոյ փոխան վէքիլ նստաւ Յարութիւն վարդապետն Պալաթցի, մինչեւ եկն զՄինաս վարդապետն յԱրզրումայ, որ եմուտ ի Ստամպօլ 1198ին փխ· որ էր առաջնորդ ՌՄ թուին : Վ 2 Ջիք եւ յետոյ կաթողիկոս ՌՄ թուին :

76· Ե 1 Ղաբանցի յունիս ԺԴ· սա յետոյ առաջնորդ եղեւ Պրուսայու, մեռաւ եւ թաղերու անդ փխ· յարեւելցի··· կարգ իւրեանց :

77· Ե 1 Զմառացի կրկին, որո եղեալ էր առաջնորդ Երուսաղէմի· եւ եբեր զսա յԵրուսաղէմէ ընդ իւր Եազուպ ամիրայն եւ նստոյց յաթոռ վերստին, մայիսի ԺԶին :

երկայն յաւուրս տացէ. եթէ կենդանի մնա-ցից զկնի եկեալսն սորին գրեցից:

Գրիգոր Կոստանդինուպօլսեցի ՌՄԺԴ, մայիսի 15:

Զաքարիա Կաղզ(ուանցի) ՌՄԻԲ:

Յովհաննէս Համատանցի 1781 ամիս 10:

Զաքարիա վերստին 1782:

Ե 1 կը շարունակէ տարբեր գրչու-թեամբ.

1213 Գրիգոր վարդապետ սամաթիացի, թոռն տէր մովսէսին, զոր նստոյց յաթոռ յակոբ աստուածաբանն զըմառացի ի կեն-դանութեան իւրում ձեռամբ իւրով, եւ ինքն հրաժարեցաւ, վասն զի ցաւագար եղեալ տկարացաւ ի զօրութենէ իւրմէ: Այս գրի-գոր վարդապետս, զկնի փոխման պատրիար-քութեան իւրոյ, եղեւ առաջնորդ կիպրոսի, եւ կեցեալ անդ տարի մի, եւ ապա փոխեաւ ի հռոմ:

1222 Զաքարիայ եպիսկոպոս կաղզուան-ցի, սա նուիրակ գոլով սուրբ էջմիածնի, զնուիրակութիւն պօլսոյ ժողովեալ, կրկին նուիրակ եղեւ ի սիմէօն կաթողիկոսէ, եւ մինչ սկսաւ ժողովել զերկրորդ նուիրակու-թիւն, արարին պատրիարգ պօլսոյ, զի հրա-ժարեցաւ ի կենդանութեան իւրում գրիգոր վարդապետն տէր մովսէսին: Սա եղեւ ախոյեան հայաստանեայց եկեղեցւոյ ջատա-գովութեամբն ուղղափառ դաւանութեանս մերոյ, եւ այժմ ի սոյն ամլ թուականիս մե-րում մեծապէս մարտ եղեալ ընդ հետեւալ

*ախթարմայից մերոց, իսպառ սպուռ կըշ-տամբէ զեկեղեցականս, եւ զժողովրդականս առ ի ուղղել եւ դարձուցանել զմոլորեալսն ի ճշմարտադաւան կրօնից մերոց, եւ մանաւանդ ի սոյն ամի ումլ* (1230), *մայիսի ԺԵ աստուածային օգնութեամբ եւ աղօթիւք սրբոյ հօր մերոյ գրիգորի լուսաւորչի բազմաչարչար նահատակի նմանեալ նմա, հաղորդակից եղեալ չարչարանաց նորին մեծաւ աշխատութեամբ, էհան ի ձեռաց ախթարմայից զ-եկեղեցիս մեր՝ որ կառուցեալ կան ի գաղատիայ: զոր տէր տացէ կեանս երկարս՝ անփորձ մնալով ի յորոգայթից թշնամեաց չարահնար ախթարմայիցն. ամէն: Եղեւ զաքարիայ պատրիարք նոյեմբերի Լին եւ ի տօնի սրբոցն թաթէոսի եւ բարդողիմէոսի:*

1230 *Յովհաննէս եպիսկոպոս պաղտատցի. սա նուիրակ գոլով սուրբ Երուսաղէմի, յետոյ եղեւ առաջնորդ պրուսայու, վասն զի զաքարիայ պատրիարքն յղեցին ի պրուսայ, եւ սա փոխան նորա բերեալ նստուցին ի պատրիարքութիւն պօլսոյս, յունիսի Բի եւ ի պատկեր աւուր դշաբաթին:*

## Տարբեր գրչութեամբ

1231 *Զաքարիայ պատրիարքն կրկին պրուսայու բերեալ նստուցին ի պատրիարքութիւն պօլսոյս, մարտի* ԻԴ*ին եւ ի պատկեր աւուր բշաբթին:*

1248 Դանիէլ եպիսկոպոս Պայեազիտցի· սա Նուիրակ գոլով սուրբ Էջմիածնի էր Նուիրակ ուռումէլու՝ ի վերադառնալն ի պօլիս, ի վախճանիլն զաքարիայ պատրիարգին մարտի ժգին, եղեւ սա պատրիարգ մարտի ժդին եւ ի պատկեր աւուր շաբաթ:

1249 Յովհաննէս եպիսկոպոս Պօլսեցի· սա աշակերտ զաքարիայ պատրիարգին ի աքսորիլն Դանիէլ պատրիարգին ի պօղշայ ատան, մայիս ժգին, եւ ի ժբ-ին մայիսի զսա արարին պատրիարգ մեծի պօլսոյն եւ ի պատկեր աւուրն շաբաթ:

1250 Գրիգոր եպիսկոպոս խամսեցի· սա Նուիրակ Թօխաթու եւ միաբան Էջմիածնի, ի աքսորիլն յօհաննէս պատրիարգին ի Թօխաթ Հոկտեմբեր ժբ-ին, զսա բերեալ ի Թօխաթու արարին պատրիարգ մեծի պօլսոյն Նոյեմբերի բին եւ ի պատկեր աւուր շաբաթ:

1251 Վերոգրեալ Յոհաննէս Սրբազան Պատրիարգն կրկին Հոկտեմբեր իբին (22) բերեալ ի Թօխաթու նստուցին յաթոռն մեծաւ Հանդիսիւ:

Վիեննայի Մխիթարեանց Թ. 1034 ձեռագիրը (Հաւաքածոյ, ԺԹ—Ի դար) կը պարունակէ Կ. Պոլսոյ հայ պատրիարքներուն մէկ ցուցակը, որ պատրաստուած է Պոլսեցի Յակոբոս Սերոբեան պատրիարքին պաշտօնավարութեան օրով, հետեւաբար 1848ի եւ 1858ի միջեւ: Ըստ անծանօթ հեղինակին, ցուցակը քաղուած է պատրիարքարանին արձանագրութիւններէն, իսկ պատրիարքութեան հիմնարկութեան մասին հեղինակը իր տեղեկութիւններուն իբր աղբիւր կը յայտարարէ «պատմութիւններ եւ յիշատակարաններ» առանց ոեւէ մանրամասնութեան իր այս աղբիւրներուն մասին[1]:

Որքան որ ալ այս ցուցակին մէջ տրուած թուականներուն բացարձակ ստուգութիւնը խնդրական ըլլայ (Յովհաննէս Կոլոտ եւ Յակոբ Նալեան պատրիարքներուն պաշտօնավարութեան շրջանները բացայայտօրէն սխալ են) անոր հրատարակութիւնը անօգուտ չենք նկատեր, յուսալով որ գրգիռ մը կ'ըլլայ նման ուրիշ ցանկերու հրատարակութեան:

---

[1] Ոսկեան Հ. Հ., Մայր ցուց. հայ. Ձեռ. Մխիթ. Մատ.ի Վիեննա Բ. հտր. Վիեննա 1963, էջ 623:

## ՑՈՒՑԱԿ ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ՀԱՅՈՑ ՈՐ Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒ-ՊՕԼԻՍ· ՕՐԻՆԱԿԵԱԼ ՅԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՊԱՏ-ՐԻԱՐՔԱՐԱՆԻ

### ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

*Կարեւոր համարեցաք շարակարգել աստանօր զկարգ պատրիարքաց, որք կացին յաթոռ մայրաքաղաքիս մինչեւ ի մեր աւուրս, ի տալ ծանօթութիւն յապա եկելոց: Քանզի որպէս ուսաք ի պատմութեանց եւ յիշատակարանաց, ազգ մեր բնակութիւն կալաւ ի Պօլիս յետ առման քաղաքին Ֆաթի սուլթան Մէհմէտէ հզօր արքայէն Օսմանցւոց: Որ ած եւ եբեր ի Պրուսայէ առաջնորդ տէր զՅովակիմ եպիսկոպոս տամբք ոմամբք, եւ ի վեց թաղս ետ նոցա տեղի բնակութեան. եւ կարգեաց զՅովակիմ եպիսկոպոս պատրիարք ի վերայ Հայոց: Եւ ահա աստի սկիզբըն կալաւ իշխանութիւն պատրիարքութեան: Զյաջորդութիւն պատրիարքացն եդաք աստ թուականօքն:*

*Ա. Յովակիմ եպիսկոպոս, ի թուին Հայոց ՋԺ* (1461)

*Բ. Նիկողոս եպիսկոպոս ՋԻԵ* (1476)

*Գ. Կարապետ եպիսկոպոս ՋԼԸ* (1489)

*Դ. Մարտիրոս եպիսկոպոս ՋԽԸ* (1499)

*Ե. Գրիգոր եպիսկոպոս ՋՀԵ* (1526)

*Զ. Աստուածատուր վարդապետ ՋՁԶ* (1537)

*Է. Ստեփան վարդապետ ՋՂԷ* (1548)

*Ը. Տիրատուր կաթողիկոս Սսոյ Ռ* (1551)

Թ. Յակոբ եպիսկոպոս ՌԺԷ (1568)

Ժ. Յովհաննէս եպիսկոպոս Համդեցի ՌԻԲ (1573)

ԺԱ. Թովմաս եպիսկոպոս Գաղատացի ՌԼ (1581)

Սա գնաց ի հարսանիս սուլթան Մուրատայ:

ԺԲ. Սարգիս եպիսկոպոս Չէյթունցի ՌԼԶ (1587)

ԺԳ. Յովհաննէս եպիսկոպոս ՌԼԸ (1589)

ԺԴ. Ազարիա կաթուղիկոս Սըսոյ ՌԽ (1591)

ԺԵ. Սարգիս եպիսկոպոս ՌԽ (1591)

ԺԶ. Մելքիսեդ կաթուղիկոս Էջմիածնի ՌԽ (1591)

ԺԷ. Գրիգոր վարդապետ Կեսարացի ՌԾԴ (1605)

ԺԸ. Յովհաննէս վարդապետ Պօլսեցի ՌԾԸ (1609)

ԺԹ. Գրիգոր վարդապետ Կեսարացի. կրկին ՌԿԱ (1611)

Ի. Յովհաննէս վարդապետ Խուլ. կրկին ՌԿԶ (1617)

ԻԱ. Գրիգոր վարդապետ Կեսարացի. կրկին ՌՀ (1621)

ԻԲ. Զաքարիա վարդապետ Վանցի ՌՀԵ (1626)

ԻԳ. Խուլ Յովհաննէս վարդապետ. կըրկին ՌՀԸ (1629)

ԻԴ. Զաքարիա վարդապետ. կրկին ՌՁԵ (1636)

ԻԵ. Դաւիթ եպիսկոպոս Արեւելցի ՌՁԸ (1639)

ԻԶ. Կիրակոս վարդապետ Արեւելցի ՌՂ (1641)

ԻԷ. Խաչատուր վարդապետ Սեբաստացի ՌՂԱ (1642)

ԻԸ. Դաւիթ եպիսկոպոս Արեւելցի ՌՂԱ (1642)

ԻԹ. Աթոռակալք ՌՂԱ (1642)

Լ. Դաւիթ եպիսկոպոս. կրկին ՌՂԹ (1650)

ԼԱ. Աթոռակալք. կրկին ՌՃԲ (1653)

ԼԲ. Թովմաս վարդապետ Հալէպցի ՌՃԶ (1657)

Սա սպանաւ յաթոռակալաց

ԼԳ. Մարտիրոս վարդապետ Քէֆէցի ՌՃԸ (1659)

ԼԴ. Ղազար վարդապետ Սեբաստացի ՌՃԹ (1660)

ԼԵ. Յովհաննէս վարդապետ Թիւթիւնճի ՌՃԺ (1661)

ԼԶ. Սարգիս վարդապետ Թէքիրտաղցի ՌՃԺԳ (1664)

ԼԷ. Յովհաննէս վարդապետ Թիւթիւնճի. կրկին ՌՃԺԴ (1665)

ԼԸ. Սարգիս վարդապետ Թէքիրտաղցի. կրկին ՌՃԺԶ (1667)

ԼԹ. Ստեփանոս Մեղրեցի ՌՃԺԹ (1670) (Զ.ին մէջ ՌՃԺԴ)

Խ. Կաղ Յովհաննէս եպիսկոպոս Ամասիացի ՌՃԻ (1671)

ԽԱ. Անդրէաս երէց Պոլսեցի մականուամբ ճիհէննէմ մէրտիվէնի ՌՃԻԱ (1672)

ԽԲ. Կըրպօ երէց Կեսարացի ՌՃԻԵ (1676)

ԽԳ. Սարգիս աշխարհական, յետոյ քահանայ ՌՃԻԸ (1679)

ԽԴ. Կըրպօ երէց. կրկին. Մարտիրոս ՌՃԻԹ (1680)

ԽԵ. Թորոս երէց Պոլսեցի. Խ օր ՌՃԼ (1681)

ԽԶ. Կըրպօ կրկին, յետոյ եպիսկոպոս ՃՌԼԱ (1682)

ԽԷ. Եփրեմ վարդապետ Արեւելցի ՌՃԼԳ (1684)

ԽԸ. Թորոս երէց. կրկին ՌՃԼԶ (1687)

ԽԹ. Խաչատուր երէց Պոլսեցի ՌՃԼԷ (1688)

Ծ. Կըրպօ ՌՃԼԷ (1688)

ԾԱ. Թորոս երէց. կրկին. վէքիլ աշխարհականօք ՌՃԼԷ (1688)

ԾԲ. Թէրզի Սախաօղլի, աշխարհական ՌՃԼԸ (1689)

ԾԳ. Շահին համամճի, վէքիլ ՌՃԽ (1691)

ԾԴ. Մաթէոս վարդապետ Կեսարացի, սարը կոչեցեալ. սա ի ՌՃԾ թուին կաթու–

ղեկոս եղեւ ի Սիս․ յետոյ առաջնորդ Երուսաղէմի․ ապա եղին ի Թի․ ուրացաւ գնաց ի Հռովմ ՌՃԽԱ (1692)

ԾԵ․ Եփրեմ Արեւելցի․ կրկին ՌՃԽԳ (1694)

ԾԶ․ Մելքիսեդ վարդապետ չայիր ՌՃԽԷ (1698)

ԾԷ․ Մխիթար վարդապետ Քիւրտիստանցի ՌՃԽԸ (1699)

ԾԸ․ Մելքիսեդ վարդապետ․ կրկին ՌՃԻԹ (1700)

ԾԹ․ Եփրեմ Արեւելցի ՌՃԾ (1701)

Կ․ Աւետիք վարդապետ Եզընկացի ՌՃԾԱ (1702)

ԿԱ․ Գալուստ վարդապետ Կայծակն ՌՃԾԲ (1703)

ԿԲ․ Ներսէս վարդապետ Պալատցի ՌՃԾԳ (1704)

ԿԳ․ Աւետիք վարդապետ․ կրկին ՌՃԾԳ (1704)

ԿԴ․ Մարտիրոս վարդապետ Եզընկացի ՌՃԾԵ (1706)

ԿԵ․ Միքայէլ երէց Խարբերդցի ՌՃԾԶ (1707)

ԿԶ․ Սահակ վարդապետ Ակնցի ՌՃԾԶ (1707)

ԿԷ․ Յովհաննէս վարդապետ Իզմիրցի ՌՃԾԶ (1707)

ԿԸ․ Սահակ վարդապետ․ կրկին ՌՃԾԷ (1708)

ԿԹ. Յովհաննէս վարդապետ Կէնճէցի ՌճԿԳ (1714)

Հ. Յովհաննէս վարդապետ Բաղիշեցի ճգնազգեաց ՌճԿԴ (1715)

ՀԱ. Յակոբ վարդապետ Ջիմառացի ՌճԿԶ (1717)

ՀԲ. Պրոխորոն. Է. օր նստաւ ՌճՂԸ (1749)

ՀԳ. Մինաս վարդապետ Ակնցի ՌճՂԸ (1749)

ՀԴ. Գէորգ վարդապետ Ղափանցի ՌՄ (1751)

ՀԵ. Յակոբոս պատրիարք. կրկին ՌՄԱ (1752)

ՀԶ. Գրիգոր վարդապետ Սամաթեացի ճՄԺԳ (1764)

ՀԷ. Զաքարիա եպիսկոպոս Կաղզուանցի յէջմիածնէ ՌՄԻԲ (1773)

ՀԸ. Յովհաննէս վարդապետ Համատանցի ՌՄԼ (1781)

ՀԹ. Զաքարիա պատրիարք. կրկին ՌՄԼԱ (1782) որ ի պատրիարքութենէ հանգեաւ ի Քրիստոս ի թուին ՌՄԽԸ (1799) մարտի 20 եւ թաղեցաւ ի Խուրու չէշմէ

Ձ. Դանիէլ եպիսկոպոս Նուիրակ Իզմիրու ՌՄԽԸ (1799) ուստի հրաժարեալ գայ ի Պօլիս: Յաւուրսն յայնոսիկ վաղճանի Զաքարիա պատրիարք. եւ Դանիէլ ընտրի փոխանակ նորա: Իսկ ի վաղճանել Ղուկաս կաթուղիկոսի ի սուրբ Էջմիածին, մահաէրով միաբանից ընտրեցին զԴանիէլ լինել

կաթուղիկոս: Մահսէրաբերն եւ հրաւիրակ էր Դաւիթ եպիսկոպոս Էջմիածնի: Եւ յորժամ Դանիէլ յօժարեցաւ լինել կաթուղիկոս, ի տեղի իւր ընտրեաց զԴաւիթ եպիսկոպոս պատրիարք. բայց ոմանք ի ժողովըրդոց քաղաքին չհաճեալ ընդ այն, զԳալուստ Նուիրակն Էջմիածնի կալեալ ոմանց Կեսարացւոց բռնութեամբ եդին յաթոռ պատրիարքութեան. որ իբր ժամս երկուս համարեցաւ պատրիարք. քանզի ազդ եղեալ ի գլխաւորաց ազգին ի դուռն տէրութեան, եկին զինուորք, եւ կալեալ զԳալուստ եւ զհամախոհս նորա եդին ի կալանս: Եւ յետոյ Դանիէլ եւ Գալուստ աքսորեցան ի կղզիս Միջերկրական ծովու. եւ առ ի խաղաղել զժողովուրդն ընտրեցին ի պատրիարքութիւն զաշակերտ Զաքարիա պատրիարքի ըդ

ՁԱ. Յովհաննէս եպիսկոպոս Պօլսեցի, մայ. 19 ՌՄԽԹ (1800)

ՁԲ. Գրիգոր եպիսկոպոս Խամսեցի առաջնորդ Եւդոկիոյ. որոյ Ժ. ամիս վարեալ զիշխանութիւնն աքսորեցաւ ի սուրբ Էջմիածին ՌՄԾ (1801)

ՁԳ. Յովհաննէս պատրիարք Պօլսեցի. կրկին ՌՄԾԱ (1802) որ յաքսորանաց Եւդոկիոյ դարձեալ, եւ ապա զկնի երկոտասան ամաց ի պատճառս տկարութեան մեկուսացաւ յԻւսքիւտար ի սուրբ Երուսաղէմի վանս. եւ անդ վճարեալ զկեանս, թաղեցաւ ի գերեզմանատան Իւսքիւտարու:

ՁԴ. Աբրահամ եպիսկոպոս Մելիքեան

Արեւելցի ՌՄԿԳ ։ Սա Բ. ամ եւ Գ. ամիս վարեալ զիշխանութիւն աքսորի յՆեւդոկիա. եւ յետոյ կարգի առաջնորդ Մարզուանու եւ անդ վաղճանի եւ թաղի ի վանս Ս. Աստուածածնի որ ի Մարզուան ։

ՁԵ. Պօղոս եպիսկոպոս Անդրիանուպոլսեցի ՌՄԿԴ (1815) ։ Փոխանորդ եւ միաբան սուրբ Երուսաղէմի. 1 դեկտ.

ՁԶ. Կարապետ եպիսկոպոս Պօլսեցի ՌՄՀԲ (1823) Միաբան սուրբ Երուսաղէմի եւ առաջնորդ Մարզուանու. ընտրեալ ի 26 հոկտ. որ ի սակս անձնական տկարութեան կամովին հրաժարեցաւ. եւ ընտրութեամբ ազգին եղեւ պատրիարք

ՁԷ. Ստեփան եպիսկոպոս Պրուսացի ՌՄՁ (1831) առաջնորդ Պօղոս եպիսկոպոսին կեսարացւոյ առաջնորդին Պրուսայու եւ Նիկոմիդեայ, եւն. ի 10 սեպտ ։

ՁԸ. Յակոբոս եպիսկոպոս Պօլսեցի ՌՄՁԸ (1839) առաջնորդ Մարզուանու. աշակերտ Յովհաննէս պատրիարքին. ընտրեցաւ պատրիարք ի 1839 ամի տեառն, եւ թուին Հայոց ՌՄՁԸ ի 11 մարտի. վասն զի ի 6 մարտի հրաժարեցաւ ի պատրիարքութենէ Ստեփաննոս եպիսկոպոս Պրուսացի. եւ ի 17 մարտի գնաց ի Նիկոմիդիա ի վիճակն իւր ։

ՁԹ. Ստեփաննոս եպիսկոպոս Պրուսացի վերստին ՌՄՁԹ (1840) Ընտրեցաւ յազգէն պատրիարք յամի տեառն 1840, ՌՄՁԹ, եւ Նստաւ յաթոռ պատրիարքութեան ի 1 Նոյեմբերի ։

Ղ. Աստուածատուր եպիսկոպոս Պօլսեցի ՌՄՂ (1841) աշակերտ Զաքարիայ Հովելյս պատրիարքի. ընտրեցաւ պատրիարք յազգէն Հրամանաւ տէրութեան, եւ նստաւ յաթոռ յամի տեառն 1841 սեպտ. 18:

ՂԱ. Մատթէոս եպիսկոպոս Պօլսեցի Ընտրեցաւ պատրիարք ի ՌՄՂԴ 1844 յուլիս 28. որ աշակերտ է Յովհաննէս պատրիարքի:

ՂԲ. Յակոբոս եպիսկոպոս Պօլսեցի, վերստին ՌՄՂԷ (1848) առաջնորդ Մարզուանու եւ Եւդոկիոյ. աշակերտ Յովհաննէս պատրիարքի. վերստին ընտրեցաւ պատրիարք յազգէն Հրամանաւ տէրութեան, եւ նստաւ յաթոռ յամի տեառն 1848 նոյ. 1:

*Եթէ Սողոմոն Ճէվահիրճեանի Կ. Պոլսոյ հայ պատրիարքներուն գաւազանագիրքը Չամչեանի աղբիւրներէն մէկը եղած ըլլալ կը թուի, յայտնօրէն միակ աղբիւրը չէ։ Ո՛չ Մաղաքիա եւ ո՛չ Սողոմոն Ճէվահիրճեան եւ ո՛չ ալ 19րդ դարու անանուն հեղինակին ցանկերը կը յիշեն Յովակիմի հետ Պրուսայէն վեց ընտանիքի* («զոր ումանք վեց տուն ասեն») *Պոլիս փոխադրութիւնը Յովակիմի հետ*։ «Ոմանք» *բառը ցոյց կու տայ թէ Չամչեան քանի մը աղբիւր ունեցած է իր տրամադրութեան տակ, որոնք մինչեւ այսօր պահուած պէտք է ըլլան Վենետիկի ձեռագիրներուն մէջ։*

*Չամչեան ուրիշ անտիպ աղբիւրի մը մէջ գտած է նաեւ հետեւեալ տեղեկութիւնները, որոնք Պոլսոյ պատրիարքութեան ծագման հետազօտութեան համար շատ աւելի կարեւոր են։*

*Չամչեան կը պատմէ թէ* «...սուլտան մէհէմմէտ յառաջնմէ մինչդեռ ի պրուսա էր, գութ ունէր ի վերայ ազգին հայոց, եւ ի վերայ առաջնորդի տեղւոյն՝ որ կոչիւր Յովակիմ եպիսկոպոս, եւ յաւուր միում ի խօսել նորա ընդ նմա, եւ յասել ցնա առաջնորդին, բարձրացուցէ տէր զթագաւորութիւն

քոյ քան զամենայն, խոստացաւ նմա սուլտանն, եւ ասէ. եթէ յաջողեսցի ինձ առնուլ նաեւ զկոստանդինուպօլիս՝ տարայց զքեզ անդր հանդերձ մեծամեծօք Հայոց. եւ արարից զքեզ գլուխ նոցա: Ապա իբրեւ էառ զայն, եւ հաստատեաց անդ զթագաւորութիւն իւր, յետ ամաց ինչ յորժամ դէպ եղեւ նմա գնալ ի պրուսա, յիշեալ զխոստումն զոր արարեալն էր, եբեր անտի ի կոստանդինուպօլիս զյովակիմ եպիսկոպոս հանդերձ քանի մի երեւելի տամբք հայոց, (զոր ոմանք վեց տուն ասեն). ի թուին հայոց. չժ. եւ ետ նոցա տեղի բնակութեան՝ ոմանց ի ներքս ի քաղաքն, եւ ոմանց ի ղալաթիա, ուր արդէն կային բազում հայք. եբեր եւ ի գաղատիոյ զչորս տունս հայոց: Եւ զյովակիմ եպիսկոպոս արքունի նամակաւ կացուցեալ առաջնորդ կոչեաց զնա փաթրիկ, այսինքն պատրիարգ. տուեալ նմա իշխանութիւն տիրելոյ ի վերայ հայոց եղելոց ի յունաստան եւ յանատոլիա...»: (Գ, 500):

*Այս մանրամասն տեղեկութեան համաձայն, ապագայ Մեհմետ Բ., դահակալութենէն առաջ, Պուրսա ապրած է անշուշտ իբրեւ կուսակալ, գնահատած է Հայերը եւ համակրած՝ անոնց, բաւական մտերմական յարաբերութիւններ հաստատած է տեղւոյն Հայոց առաջնորդին՝ Յովակիմ եպիսկոպոսին հետ, որուն — ոչ Ջամչեան, բայց ուրիշներ կը վերագրեն սուրը օրհնած ըլլալ, որպէս զի Պոլիսը յաջողի գրաւել:*

Ըստ այսմ, Մեհմետ Չելեպի իր ապագայ ծրագիրներուն խորհրդակից ըրած է Ցովակիմը, որուն խոստացած է, Պոլիսը գրաւելու պարագային, զինքը հոն փոխադրել եւ Հայոց գլուխ կարգել: Պոլսոյ գրաւումէն քանի մը տարի ետք երբ Պուրսա երթալու առիթ մը ներկայացած է, յիշած է իր խոստումը եւ Ցովակիմը Պոլիս փոխադրած եւ զայն փաքրիկ, այսինքն պատրիարք անուանած է:

Այս հաւաստումները, որ մօտաւորապէս հարիւր ութսուն տարիէ ի վեր կրկնուած են եւ կը շարունակեն կրկնուիլ մինչեւ այսօր Պոլսոյ պատրիարքութեան հիմնարկութեան պատմութեան իբրեւ պատմական վաւերական աղբիւր, բոլորովին կը հակասեն պատմական ստոյգ տեղեկութեանց:

2. Սուլթան Մուրատ Բ 1443ի առաջին վեցամսեային տասերկու տարեկան իր որդին Մեհմետ Չելեպին, օսմ. պետութեան վաղեմի սովորութեան համաձայն, Մաղնիսա ղրկեց: Այդ ատեն, Մեհմետ նոյն իսկ չէր կրնար երեւակայել որ օր մը օսմանեան գահը կրնար բարձրանալ: Մուրատ Բ.ի կենդանի առաջին արքայազն իշխանը եւ գահաժառանգը՝ Ալաէտտին Ալի Չելեպին երկար ատենէ ի վեր Ամասիոյ կուսակալն էր, ինչպէս եղած էր իր հայրը: 1443ին Ալաէտտին Ալի մեռաւ եւ Մեհմետ Չելեպի եղաւ Մուրատ Բ.ի գահաժառանգը:

Ալաէտտին Ալիի մահէն քիչ առաջ Հունգարիոյ Լատիսլաս թագաւորը եւ Սերպիոյ տեսփոթը Դանուբը անցնելով սկսած էին օսմանեան սահմանները արշաւել: Կայսրութեան ներքին կացութիւնն ալ վերջին աստիճան մտահոգիչ էր: Բանակը եւ զօրավարները կը մերժէին հնազանդիլ սուլթանին եւ կը խուսափէին պատերազմելէ, որուն հետեւանքով Օսմանցիները պարտութիւններ կը կրէին:

Կայսրութեան այս կացութիւնը եւ Ալաէտտինի մահը խոր վիշտ պատճառած էին Մուրատ Բ.ի որ, Փէոտալ պէկերուն կեդրոնախոյս ձգտումներէն մտահոգ, փութով Մեհմետ Չելեպին Մաղնիսայէն բերել տուաւ եւ, շատ հաւանականաբար, 1444ի ամառը գահ բարձրացուց առանց ինք բոլորովին հրաժարելու իր վեհապետական իրաւունքներէն: Մուրատ Բ.ի նպատակն էր իր կենդանութեան իսկ իր պատանի որդւոյն եւ գահաժառանգին գահը ամուր հիմերու վրայ դնել կայսրութեան քայքայումը արգիլելու համար: Քիչ ետք ինք հրաժարեցաւ գահէն:

Մեհմետ Բ. երկու տարի Էտիրնէի մէջ գահակալելէ ետք, արտաքին եւ ներքին քաղաքական կացութիւնը ստիպեց Մուրատ Բ.ը Մեհմետը գահէն հեռացնել եւ դարձեալ ինք գահ բարձրանալ: Մեհմետ անմիջապէս Մաղնիսա ղրկուեցաւ երկրորդ անգամ: Երբ 3 փետրուար 1451ին Մուրատ Բ. մեռաւ, Մեհմետ, կարելի արագութեամբ Մանիսա–

յէն էտիրնէ փութաց եւ գահ բարձրացաւ։ 20 տարեկան հասակին[1]։

Կ. Պոլսոյ գրաւումէն առաջ Մեհմետ Բ Ֆաթիհի կեանքին այս ստոյգ պատմութիւնը անառարկելիօրէն կը հերքէ Ջամչեանի աղբիւրին կամ աղբիւրներուն հաղորդած տեղեկութիւնները։ Մեհմետ Բ, Պոլսոյ գրաւումէն առաջ, ոեւէ ատեն Պուրսա չէ ապրած եւ, հետեւաբար, ո՛չ տեղւոյն Հայերուն եւ ո՛չ անոնց կրօնական պետին համար համակրութիւն տածած եւ Յովակիմի խոստումներ ըրած կրնայ ըլլալ։

Որչափ ատեն որ Վենետիկի Մխիթարեանները չհրատարակեն Ջամչեանի խնդրոյ առարկայ աղբիւրը, կարելի չէ ճշտել թէ ե՛րբ յօրինուած է Մեհմետ Չէլեպէի եւ Յովակիմի մտերմութեան առասպելը։ Ամէն պարագայի մէջ փաթրիկ (patrik) արտասանութիւնը յարաբերաբար նոր արտասանութիւնն է հնագոյն batrik ձեւին, եւ Ջամչեանի աղբիւրին 17րդ կամ 18րդ դարուն գրուած ըլլալը ենթադրել կու տայ։

3. Եթէ Ֆաթիհ Պոլսոյ գրաւումէն առաջ Պուրսա չէ ապրած, գրաւման յաջորդ տարին, 1454ին, Պուրսա գացած է Պոլիս բնակիչ փոխադրելու եւ կարգ մը խնդիրներու կարգադրութեան համար։ Այդ թուականին Պոլիս Հայ փոխադրուած ըլլալուն

---

[1] Աւելի մանրամասնութեանց համար տես Halil Inalcık, *Fatih devri üzerinde tetkikler ve vesikalar*. I. Ankara, 1954.

մասին ոեւէ յիշատակութիւն չկայ սակայն։ Զամչեանի աղբիւրին տեղեկութիւնը թէ Ֆաթիհ տարիներ ետք Պուրսա գացած է նմանապէս ճիշտ չէ։

Ֆաթիհ երկրորդ անգամ Պուրսա այցելած է 1461ին, Տրապիզոնի գրաւումէն Պոլիս վերադարձին (Քրիթովուլոս, էջ 156)։ Թէեւ այցելութեան տեւողութիւնը չէ յիշուած, սակայն ստոյգ կարելի է համարել թէ այդ ատեն է որ որոշած է Յովակիմը եւ քանի մը երեւելի հայ տուներ Պոլիս փոխադրել։ Ինչպէս նախապէս ըսուեցաւ[2], Տրապիզոնի գրաւումէն առաջ եւ Ամասթրիսի գրաւումէն ետք (ամենայն հաւանակութեամբ 1461ի սկիզբները) Ֆաթիհ Պոլիս փոխադրել տուած էր իշխանութեան ենթակայ թէ՛ Հայերէն եւ թէ ուրիշ ազգերէ հարուստ, վաճառական, առեւտրական եւ արհեստաւոր տարրեր։ Պոլսոյ Հայերուն թիւը աւելցած եւ, հաւանականաբար, Պոլսոյ Հայոց կրօնական պետը ծերացած կամ վախճանած ըլլալով, Ֆաթիհ Պոլիս փոխադրած է Յովակիմը, որ նախապէս ալ հոն պաշտօնավարած էր։ Թէ ինչո՞ւ նախապատուութիւնը տուած է Յովակիմին եւ ոչ՝ ուրիշ քաղաքի մը առաջնորդին՝ յայտնի չէ։ Թերեւս Յովակիմ Պոլսոյ գրաւումէն ետք Ֆաթիհը շնորհաւորած եւ կամ Թուրքերէն լեզուի քաջածանօթ եղած ըլլայ, ինչպէս էր,

---

[2] Տես էջ 21։

հաւանականաբար, Թրքախօս Հայերու առաջնորդ մը:

Ինչ որ ստոյգ կրնայ նկատուիլ Յովակիմի փոխադրութիւնն է Կ. Պոլիս 1461ին:

4. Զամչեանի աղբիւրը կ'աւելցնէ նաեւ թէ Ֆաթիհ «արքունի նամակաւ» (պերաթ) Յովակիմին շնորհած է Յունաստանի եւ Անատոլուի Հայերուն վրայ «տիրելու իշխանութիւնը», պատրիարք տիտղոսով:

Այս տեղեկութիւնն ալ չի հաստատուիր պատմական ոեւէ վկայութեամբ: Ո՛չ Քրիթովուլոս, ո՛չ Տուքաս եւ ոչ ալ ուրիշ ժամանակակից օտար ոեւէ աղբիւր 1461ին Պոլսոյ մէջ հայ պատրիարքութեան մը հաստատութիւնը յիշած են: Քրիթովուլոս, որ Ֆաթիհի պատմագիրն է, ոչ իսկ Յովակիմի փոխադրութիւնը յիշատակութեան արժանի դէպք մը համարած է: Բայց օտար աղբիւրներէն անկախաբար, մօտաւորապէս ժամանակակից հայ ժամանակագիրներէն ո՛չ մէկն ալ Յովակիմին փոխադրութիւնը եւ պատրիարք անուանումը յիշատակած է: 15րդ դարուն, Օսմանեան կայսրութեան մայրաքաղաքին մէջ, Էջմիածնի եւ Սիսի կաթողիկոսութիւններուն եւ Երուսաղէմի պատրիարքութեան առընթեր նոր պատրիարքութեան մը հիմնարկութիւնը այնքան ալ աննշան դէպք մը չէր որ, նոյն իսկ եթէ եկեղեցական բարձր իշխանութիւնները եկեղեցական նուիրապետութեան մէջ անոր գո-

յութեան իրաւունքը ժխտէին, անգիտանային անոր գոյութիւնն իսկ[3]:

Ենթադրելով իսկ թէ հայ եւ օտար աղբիւրներուն լռութիւնը դրական փաստ մը չըլլայ, կը մնայ դեռ քննել թէ Ֆաթիհի եւ իր յաջորդներուն օրով ի՞նչ տիտղոս կրած են Պոլսոյ առաջին հայ գերագոյն հոգեւոր պետերը:

5. Ֆաթիհ չստեղծեց Յունաց պատրիարքութիւնը, այլ Օրթոտոքս Եկեղեցիին դարաւոր հիմնարկութիւնը օժտեց նոր գահակալով մը, ո՛չ թէ Պոլսոյ գրաւման յաջորդ օրն իսկ, ինչպէս ոմանք գրած են, այլ

---

[3] 17րդ դարուն, Առաքել Դաւրիժեցի Պոլսոյ պատրիարքներուն համար կ'ըսէ. «պատրիարք անուանեալ առաջնորդք» Գ. տպ., էջ 335):

Անճոլելլօ, որ Ֆաթիհի օրով Պոլիս ապրած է, կը յիշէ միայն մէկ պատրիարքարան եւ բազմաթիւ ուրիշ քրիստոնեայ եկեղեցիներ Յոյներու, Լատիններու, Մակեդոնացիներու եւ Հայերու, ինչպէս նաեւ Հրեաներու սինակոկներ:

(In questa città sono assei Chiese lequalih sono offitiate da Christiani, come à il Patriarcado, et molte altere Chiese di Greci et Latini et di Macedoni et Armeni, et par lo simile li Giudei hano le sue synagoge...) Angiolello, Historien des Ottomans et des Persans. Première édition annotée par Jean Reinhard. Buenos Aires. Ըստ Եղիա Աստուածատուրեան Մուշեղեանի, «յորժամ Թուրքն առին Իստամպօլ 300 տուն հայ գնացին ի քաղաքն Անկոնայ, յո՞ւր են նոքա...» այլ եւ ոչ գոյ երեք տուն (Հ. Հ. Ոսկեան, Եղիա Աստուածատուրեան Մուշեղեան եւ իր գրական արտադրութիւնները: Վիեննա, 1927, էջ 33, ծան. 2):

հաւանականաբար տարի մը ետք, քաղաքական նկատումներով, սիրաշահելու համար օրթոտոքսները, որոնք ո՛չ միայն Պոլսոյ, այլ իր կայսրութեան ոչ-օրթոտոքս ամէնէն ստուարաթիւ տարրը կը կազմէին:

Հրեաներու համար ալ խախամապետ մը անուանեց, որովհետեւ Հրեաներու հոծ թիւ մը արդէն կ'ապրէր Ոսկեղջիւրի ափերուն վրայ եւ ամէն կողմէ Հրեաներ կը փութային Պոլիս գալ: Խախամապետը միայն Պոլսոյ եւ ոչ թէ կայսրութեան բոլոր Հրեաներուն պետն էր:

1461էն առաջ Պոլսոյ Հայերուն թիւը ծանօթ չէ եւ յարաբերաբար Յոյներուն թիւէն շատ աննշան պէտք է եղած ըլլայ: 1461ին, Ամասթրիսի գրաւումէն ետք, Պոլիս փոխադրուած Հայերուն թիւն ալ ծանօթ չէ, բայց հազարաւորներու չի կրնար հասած ըլլալ, որովհետեւ միայն օգտակար վաճառականներ, արհեստաւորներ եւ ուսեալ մարդիկ փոխադրուած են: Պոլսոյ գրաւումէն 25 տարի ետք կատարուած մարդահամարին համաձայն, հին Իսթանպուլ քաղաքին մէջ 372 եւ Կալաթայի մէջ 62 տուն Հայ կար: Կալաթայի Հայերուն մէկ մասը հոն հաստատուած էր արդէն Պոլսոյ գրաւումէն առաջ, իսկ Իսթանպուլի 372 տուն Հայերը մեծամասնութեամբ 1461ի եւ 1478ի միջեւ Պոլիս հաստատուած են: Հետեւաբար, 1461ին, երբ Յովակիմ Պոլիս փոխադրուեցաւ, Պոլսոյ հայերուն թիւը

առաւելագոյն 100–150 տուն կրնայ եղած ըլլալ[4]: Որքան ալ փոքր եղած ըլլայ Հայոց թիւը 1461ին, երկար ատենէ ի վեր անոնք ունէին իրենց եպիսկոպոսը՝ Մարտիրոս, որ 1461էն ետք չի յիշուիր այլեւս, ինչպէս նախապէս ունեցած էին ուրիշներ: Հետեւաբար, Յովակիմի Պոլիս փոխադրութիւնը իբրեւ տեղւոյն Հայոց եպիսկոպոս արտասովոր երեւոյթ մը նկատելու տեղի չի մնար:

Պոլսոյ եպիսկոպոսին իրաւասութեան աշխարհագրական սահմանները մինչեւ ո՞ւր կը տարածուէին: Ստոյգ ոեւէ տեղեկութիւն գոյութիւն չունի այս մասին: Նոյն իսկ

---

4 Սիմէոն Լեհացի իր Ուղեգրութեան մէջ (էջ 8) կը գրէ թէ Ստամպօլի մէջ, 1608ի վերջերը, «ութսուն տուն՝ տուն տեղացի հազիւ գտանէր· բայց եկն եւ ղարիպն աւելի քան քառասուն հազար տուն ի Ստամպօլ, Ղալաթա եւ Սկուտարն»: Սիմէոն Լեհացիէն մօտաւորապէս դար մը ետք, Պոլսոյ Ֆրանսական դեսպանատան քարտուղար Pétis de la Croix, *La Turquie chrétienne* (Paris, 1695), p. 213-214, կը գրէ թէ աւելի քան ութը հազար Հայու տուն կայ եւ յիսուն հազար անցաւոր Կ. Պոլիս, Կալաթա եւ Իւսկիւտար: Բայց 1714ին, Père Tarillon նամակի մը մէջ, զոր ուղղած է Comte de Pontchatrinի, կ'ըսէ թէ Կ. Պոլիս հաստատուած 200·000 տուն Յոյն եւ 80 տուն Հայ կայ, առանց հաշուելու անոնք որ կ'երթան ու կու գան (*Lettres édifiantes.* Missions du Levant, I, p. 3–4): Արդեօք Pétis de la Croixի ձեռագրին մէջ ութսուն տունը ութը հազա՞ր տպուած է: Այս 80 տուն Հայերը Պոլսոյ գրաւման ժամանակ հոն հաստատուած Հայերն էին հաւանականաբար:

յայտնի չէ թէ հին Իսթանպուլի (Բիւզանդիոն) եւ Կալաթայի Հայերը նո՞յն եպիսկոպոսին ենթակայ էին թէ իւրաքանչիւր համայնք իր ուրոյն եպիսկոպոսը ունէր:

Զամչեանի աղբիւրը կ՚ըսէ թէ Ֆաթիհ Յովակիմի տուաւ «իշխանութիւն տիրելոյ ի վերայ հայոց եղելոց ի յունաստան եւ յանատոլիա»: Յովակիմէն առաջ ալ Ռումելիի Հայերը կախում ունեցած պէտք է ըլլան Կ. Պոլսոյ եպիսկոպոսէն, որովհետեւ իրենց եպիսկոպոսը ունեցած չեն (1307ի Սիսի ժողովին միայն Իստինպոլի եպիսկոպոս Յուսիկ հրաւիրուած եւ մասնակցած է): Իսկ «Անատոլիա» կրնայ միայն նշանակել այդ ատեն օսմանեան տիրապետութեան ենթակայ Փոքր Ասիոյ սահմանափակ մէկ շրջանը: Բայց երբ Արշակ Ալպօյաճեան կը պատմէ թէ «նախ քան Կ. Պոլսոյ պատրիարքութեան հաստատութիւնը» Պրուսայի, Այտընի, Գասթամունիի, Էնկիւրիւի եւ Սըվազի կուսակալութեանց մէջ, «կազմակերպուած թեմեր էին Սըվազ, որուն կեդրոնն էր Ս. Նշանի վանքը, Էնկիւրիւ, որուն առաջնորդանիստ կեդրոնն էր Ս. Աստուածածնայ վանքը... որոնք կցուեցան Կ. Պոլսոյ պատրիարքութեան Ֆաթիհ սուլթան Մէհմէտի շնորհած հրովարտակի զօրութեամբ իբրեւ ուրոյն առաջնորդութիւններ» եւ թէ Ֆաթիհի օրով գրաւուած Տրապիզոնի (1461ին) եւ Ղրիմի (1479) առաջնորդութիւններն ալ միացան Կ. Պոլսոյ պատրիար-

քուլթեան[5], երեւակայական պատմագրութեան գեղեցիկ օրինակ մը կը պարզէ։ Ո՛չ Ալպօյաճեան եւ ոչ ալ ուրիշ մէկը տեսած է «Ֆաթիհի շնորհած հրովարտակ»ը որ կարենայ անոր բովանդակութեան մասին խօսիլ, եւ ո՛չ ոք կրնայ պատմական աղբիւր մը յիշել ուր խօսուած ըլլայ, օրինակի համար, այդ շրջանին, Սեբաստիոյ առաջնորդներուն եւ Կ. Պոլսոյ պատրիարքարանին յարաբերութեանց մասին (1387էն մինչեւ 1482 Սեբաստիոյ Ս. Նշանի վանքը վանահայր – առաջնորդ ունեցած ըլլալ չի թուիր, որովհետեւ վանահօր ոչ մէկ յիշատակութիւն գոյութիւն ունի)։ 17րդ դարուն վերջերը, Փեթի տը լա Գռուա (ծան. 4ի մէջ յիշուած գիրք, էջ 240) կը գրէր թէ Պոլսոյ «պատրիարքին իրաւասութիւնը միայն իր արքեպիսկոպոսական վիճակին վրայ կը տարածուի, այսինքն Անատոլուի մէջ՝ մինչեւ Թոգաթ, եւ Րումելիի մէջ մինչեւ Դանուբ»։ Այս էր Կ. Պոլսոյ պատրիարքին իրաւասութեան շրջանը 17րդ դարուն, եւ աւելի առաջ առ առաւելն նոյնը միայն կրնայ եղած ըլլալ։ Ըստ այսմ պէտք է գնահատել Արշակ Ալպօյաճեանի այն հաւաստումը թէ Յովակիմ «արքունի հրովարտակով» հռչակուած է «Թուրքիոյ բոլոր Հայոց պատրիարք[6]»։

---

5 Ընդարձակ Օրացոյց Ազգային Հիւանդանոցի (1908), *արտատպուած* Շողակաթ (*Իսթանպուլ*), *Յուլիս–Դեկտեմբեր* 1961, *էջ* 31։

6 Անդ, *էջ* 31։

6. *Կ. Պոլսոյ պատրիարքութեան ծագման մասին* Ազգապատումի *մէջ (էջ* 2155–2158) *Օրմանեանի խորհրդածութիւններուն եւ ենթադրութիւններուն մէջ ուշադրութեան արժանի են հետեւեալ տողերը.* «... տրուած պատրիարքութիւնը լոկ արտաքին իրաւունք էր. եկեղեցական նուիրապետութեան տեսակէտով պատրիարքական աթոռ հաստատել վեհապետական կարողութենէն վեր էր, եւ բարձրագոյն եկեղեցական իշխանութենէ մը այսպիսի իրաւասութիւն կամ աստիճան հաստատուած չէր: Վասն զի ոչ Սիսի եւ ոչ Էջմիածնի աթոռները, որչափ որ գիտենք, Կոստանդնուպոլիսով զբաղած չեն»:

*Ըստ Օրմանեանի, պատրիարքութիւն մը միայն Էջմիածին կամ Սիս գումարուած Եկեղեցական ժողովով մը կրնար հիմնուիլ: Բայց ո՞ր Եկեղեցական ժողովն է որ ստեղծած է Երուսաղէմի Հայոց պատրիարքութիւնը կամ Աղթամարի կաթողիկոսութիւնը, առանց յիշելու այն կաթողիկոսական աթոռները որոնք միաժամանակ գոյութիւն առած են զանազան տեղեր: Օսմանեան կառավարութիւնը եթէ համամիտ գտնուէր, Յովակիմ ինքզինքը պատրիարք կրնար հռչակել, եւ Էջմիածնի ու Սիսի աթոռներուն կը մնար Կ. Պոլսոյ պատրիարքութիւնը ճանչնալ կամ ոչ, թէեւ անոր գոյութեան անգիտացումը գործնական հետեւանք մը չէր ունենար, ինչպէս որ չէ ունեցած:*

*Անորոշ է իմաստը Օրմանեանի վերջին նախադասութեան: Եթէ ըսել ուզած է թէ Էջմիածին եւ Սիս Կ. Պոլսոյ պատրիարքութեան ստեղծման մէջ դեր մը չեն ունեցած անշուշտ ճիշտ է, բայց պատրիարքութիւնը ստեղծուած է սուլթանական արտօնութեամբ եւ ոչ նախաձեռնութեամբ, եւ ոչ Էջմիածին եւ ո՛չ ալ Սիս սուլթաններուն կարգադրութեանց հակառակելու կարողութիւնը չունէին:*

*Միւս կողմէ, ցորչափ Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռը Կիլիկիա կը գըտնուէր, բոլոր եպիսկոպոսները, որոնց մէջ նաեւ Կ. Պոլսոյ եպիսկոպոսը, իրենց օծումը կը ստանային Սիսի կաթողիկոսէն եւ անոր ենթակայ էին: Նոյն իսկ կաթողիկոսական աթոռին Էջմիածին փոխադրութենէն ետք* (1441), *Պոլիս, գէթ ատեն մը շարունակած է Սիսէն կախում ունենալ, ինչպէս կարելի է հետեւցնել Ամիրտովլաթ Ամասիացիի* Ուսումն բժշկութեան *ձեռագրին* 1459*ին գրուած յիշատակարանէն* (*Տես Յաւելուած, Յիշատակարան* 1), *ուր կաթողիկոս յիշուած է Գրիգոր* (*Մուսաբէկեանց*), *թէեւ ըստ Օրմանեանի* (*Ազգապատում, Գ. էջ ՃԿԹ*) *Մուսաբէկեանց այդ թուականին վախճանած էր: Եթէ քանի մը տարի ետք, Կ. Պոլսոյ Հայերը Էջմիածնի կաթողիկոսը կը յիշեն իբրեւ իրենց կաթողիկոսը, կը նշանակէ թէ Էջմիածին կապ հաստատած է Պոլսոյ հետ կամ Պոլիս՝ Էջմիածնի հետ:*

Օրմանեան իրաւացի է երբ դիտել կու տայ թէ «վեհապետական կարողութեան վեր էր» պատրիարքութիւնը ստեղծել, «պատրիարքութիւն» բառը գործածելով այն իմաստով զոր ունէր քրիստոնէական Եկեղեցիին սկզբնական շրջանին: Բայց Ֆաթիհ, ինչպէս իր նախորդները եւ իր հետեւորդները մինչեւ 15րդ դարուն վերջերը, նոյն իսկ իսլամական կրօնքին օրէնքները չէն յարգած (ինչպէս մանկահաւաքի, գանուններ հաշակելու պարագաներուն) եւ եթէ Ֆաթիհ իր չահերուն համապատասխան նկատէր իր օրով Հայոց պատրիարքութիւն մը ստեղծել, քրիստոնէական Եկեղեցիին աւանդութիւնները չէին որ զինքը պիտի կասեցնէին:

7. Եթէ Ֆաթիհ Յովակիմը «պատրիարք» անուանած ըլլար, բնական է որ Յովակիմ ինքզինքը եւ ուրիշներ Յովակիմը նոյն տիտղոսով յորջորջած ըլլային: Արդ, 1461էն ետք Յովակիմի օրով գրուած ձեռագրական յիշատակարաններէն առաջինին եւ երկրորդին մէջ, գրուած 1469ին, Յովակիմի պաշտօնը կոչուած է «եպիսկոպոսութիւն» եւ «արհիեպիսկոպոսութիւն» (Յիշատակ., 2, 3 եւ 4): Յովակիմի յաջորդին Նիկողայոսի պաշտօնն է դարձեալ «հայրապետութիւն» եւ «եպիսկոպոսութիւն» (Յիշատակարան 5, 6 եւ 6 կրկին, 7): Թէ «հայրապետութիւն» բառը թարգմանութիւնը չէ յունարէն փաթրիարխոս կամ արաբերէնէ փոխառեալ թուրքերէն batrik բառին—դաւա-

ռական վանահայրեր յաճախ կոչուած են հայրապետ – կը հաստատուի Յովակիմէն առաջ, օսմանեան շրջանին, Կ. Պոլսոյ Հայոց կրօնական պետին՝ Մարտիրոսի համար 1459ին գրուած յիշատակարանով (Յիշատակարան 1):

8· Եթէ Ֆաթիհի օրով Պոլսոյ Հայոց կրօնական պետին վերաբերեալ օսմանեան վաւերագիր մը պահուած ըլլար, անոր մէջ պիտի գտնէինք այն տիտղոսը զոր Ֆաթիհ տուած է անոր: Դժբախտաբար, Ֆաթիհի շրջանէն այսպիսի վաւերագիր մը չէ հասած մեզի:

Հնագոյն պաշտօնական գրութիւնը այն եարլըղն է (Ֆերման), որ կը վերաբերի Սուլու Մանաստըրի եւ հրատարակուած է Pr. Dr. Franz Babingerի կողմէ[7]: Եարլըղը տրուած է սեպհականութեան վէճի մը առթիւ Սուլու Մանաստըր[7ա] կրկին հաստատուած հայ եկեղեցականին՝ Գրիգորի, որ կոչուած է ոչ թէ batrik այլ մարհասա, որ ասորերէն մարհասիա բառին կրճատուած

[7] Տես Հայկ Պէրպէրեան ՀԱ., 961, էջ 123–127, ուր քննուած է Պապինկերի ընթերցումը եւ ճշտուած են եարլըղին թուականները:

7ա. Ըստ Լէոնգլավիուսի, Յոյները ռամկօրէն սուլունա (suluna) կը կոչէին Սուլու Մանաստըրը: (Յունագէտի մը համաձայն, նա մասնիկը «առատութիւն» կը յատկանշէ, որով սուլունա կրնայ նշանակած ըլլալ «ջրառատ» (Leunclavius, ծան. 26ի մէջ յիշուած գիրքը, էջ 64):

ձեւն է եւ բարձրաստիճան եկեղեցականնե-
րուն տրուած պատուանուն մըն է[8] մոնկո-
լական շրջանէն սկսեալ, եւ ոչ թէ պաշտօնի
մը տիտղոսը, եւ Սելճուքեաններէն անցած
է Օսմանցիներուն: Եարլըղին մէջ յիշուած
առաջին թուականն է ճեմադիուլէվվել 932,
որ կը սկսի 1526 փետրուարին, իսկ պահ-
ուած ֆէրմանին թուականն է (թերեւս 13)
րեպիուլէվվել 978, որ կը սկսի 15 օգոստոս
1570ին: Հետեւաբար, ֆէրմանը նախապէս
տրուած է Սիւլեյման Գանունիի օրով, երբ
իրօք կը պաշտօնավարէր Գրիգոր «պատ-
րիարք» (1526–1537): 1570ին, նախապէս
տրուած ֆէրմանին պատճէնը խնդրուած է
օրուան պատրիարքին կողմէ (Յակոբ) եւ նոյ-
նութեամբ տրուած է Սիւլէյման Գանունիի
որդւոյն եւ յաջորդին Սելիմ Բ.ի իշխանու-
թեան շրջանին: Ֆէրմանին ետեւի ստորա-
գրութիւններէն առաջինը էլ Ֆագիր Մու-
համմետ է, իսկ երկրորդը էլ Ֆագիր Հասան:
Առաջինը բէխ–իւլ–քիւթթապն է, իսկ երկ-

---

8 Մարհասա, մարհասիա, մահրասա բառերուն եւ անոնց գործածութեան մասին տես Հայկ Պէրպէրեան, ՀԱ. 1960, էջ 348–387 եւ 1962, էջ 72–73: Այս բառին հնագոյն ձեւը مرحسا կը գտնուի Իլխան Ապու Սաիտ Պահատուր խանի (1316–1335) կողմէ Շամբի կամ Մաղարդի (Մղարթ) Ս. Ստեփանոս Նախավկայի վանահայր (°) տէր Վարդանի տրուած եարլըղին մէջ (Հ. Փափազեան, «Երկու նորայայտ իշխանական եարլըղներ» (Բանբեր Մատենադարանի 6, էջ 398):

բորդը հաւանականաբար պեյլիքճին[9]: Ֆերմանը հինին պատճէնը ըլլալով մարհասա բառը պահուած է նոյնութեամբ:

Գ. Կ. Պոլսոյ հայ պատրիարքութեան գոյութիւնը իրականութիւն մըն է սակայն: Եթէ Յովակիմ եւ իր անմիջական յաջորդները պատրիարք տիտղոսը կրելու արտօնութիւնը չունէին, ո՞ր թուականէն սկսեալ զայն կրել սկսած են պաշտօնապէս:

Որքան որ ծանօթ է այս տողերուն հեղինակին, պատրիարքական աթոռին առաջին գահակալը որ ինքզինքը պատրիարք յորջորջած է՝ Աստուածատուր վարդապետն է, վերջին տէրը 1438ին Պոլսոյ եպիսկոպոս Յովակիմի համար օրինակուած Ձեռնադրութեան Գիրքին (Յիշատակարան 9), որուն կցած է իր յիշատակարանը՝ գրուած 21 ապրիլ 1543ին (Յիշատակարան 8 եւ 14): Անոր յաջորդը Ստեփաննոս Ուլուղալէցի (1546–1561) նոյնպէս ինքզինքը պատրիարք կը կոչէ եւ կ'ըսէ թէ զինքը Պոլիս տարած եւ «զպատրիարգութիւն մեզ առին ի Սուլթան Սուլէմանէն»[10] (Յիշատակարան 10):

1526ին Սուլու Մանասթըրի եպիսկոպոս Գրիգորի խնդրանքով տրուած ֆերմանին

---

9 Եարըլըղըին թուականները ճշտած է Իսթանպուլի համալսարանէն Dr. Bekir Fındıkoğlu, որուն կը յայտնեմ շնորհակալիքս:

10 C. F. Dowsett, “Stepanos I, patriarch of Constantinople and his accusers„ (*Handes Amsorya*, 1961, p. 870-878).

մէջ գործածուած պատուանունն է մարհա-
սա, իսկ 1543ին Պոլսոյ Հայոց կրօնական պե-
տը ինքզինքը կը կոչէ պատրիարք: Ներե-
լի է, հետեւաբար, հետեւցնել թէ ընդմէջ
1526ի (երբ Գրիգոր մարհասա կոչուած է)
եւ 1543ի (Յիշատակարան 8, որուն մէջ
Աստուածատուր «պատրիարք» կը յոր-
ջորջուի), սուլթան Սիւլէյման Գանունիի
օրով, Պոլսոյ Հայոց կրօնական պետին շնոր-
հուած է պատրիարք տիտղոսը կրելու պաշ-
տօնական արտօնութիւնը եւ որոշ իրաւա-
սութիւն:

Կ. Պոլսոյ անգլիական դեսպանատան
խորհրդական George Young իր Corps du Droit
Ottomanին մէջ, յիշելէ ետք պատրիարքու-
թեան հաստատման աւանդական թուակա-
նը, ծանօթագրութեան մը մէջ կ'ըսէ. «Կ.
Պոլիս կատարուած նորագոյն ուսումնասի-
րութեանց համաձայն, պատրիարքութեան
հիմնարկումը աւելի ուշ տեղի ունեցած ըլ-
լալ կը թուի եւ ոչ՝ 16րդ դարէն առաջ[11]»:

Ապահովաբար, Եունկի ակնարկած «նո-
րագոյն ուսումնասիրութիւնները» Փափա-
թիսի մէկ աշխատութեան քանի մը տողերն
են, ուր յոյն հեղինակը կ'ըսէ, առանց աղ-
բիւր ցոյց տալու, թէ Պերիբլեպտոսի մե-
նաստանը (Սուլու Մանասթըր) Հայոց յանձ-
նուած է 1543ին սուլթան Սիւլէյմանի օրով,

---

11 George Young, *Corps du Droit ottoman*, II, p. 73, note (0xford, 1905).

*շնորհիւ Հայուհիի մը, որ հարեմ մտած էր*[12]:

*Ուշագրաւ է որ, առանց Թուականի եւ առանց Հայուհիի մը վերագրուած դերին, նոյն տեղեկութիւնը կը հաղորդեն Երեմիա Չելեպի Քէօմիւրճեան, Սարգիս Դպիր Սարաֆ Յովհաննիսեան եւ Ղ. Ինճիճեան:*

*Երեմիա Չելեպի կը գրէ.*

> Սուլու Մանաստըր կոչեցեալ սուրբ Գէորգ փառաւորական /Զոր յունաց առեալ տայ մեզ հունքարն որ սուլթան Սիւլէյման[13]

*Սարգիս Դպիր Սարաֆ Յօհաննիսեան, Երեմիա Չելեպիէն շուրջ* 150 *տարի ետք, Կ. Պոլսոյ իր անտիպ պատմութեան մէջ Սուլու Մանաստըրի համար կը գրէ.* «Առումն եկեղեցւոյս ի ձեռաց յունաց եղեալ է ի ժամանակի փաթիհ սուլթան Մէհէմմէտին յառման քաղաքին Կ. Պոլսի. վասն զի տեսեալ եւ ընթերցեալ է իմ գիրք մի Ողբոց Եդեսիոյ բոլոր գրով. յորոյ յիշատակարանին գրի այսպէս. *Գրեցաւ Երգարանս տեառն Ներսէսի ի մայրաքաղաքս Ստընպուլ: Ի սուլու մանաստրս ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ զօրավարին ձեռամբ անիմայ եւ մեղսամած*

---

[12] *Α. Γ. Πασπατης, Βυζαντιναι Ηελεταὶ, Κωνστανοπολις,* 1877, p. 400.

[13] *Տոքթ. Վ. Յ. Թորգոմեան*, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութիւն, *Ա, էջ* 7: *Տես նաեւ էջ* 209 *եւ յջրդ:*

գրչի Կարապետ երիցու Համշինցոյ: Աղաչեմ զձեզ անմեղադիր լերուք, զի կար մեր այսչափ էր. Թ. ՋԽԲ 1493, յունիս ամսոյ 25»:[14]

Այս տողերէն կը հետեւի թէ Սարգիս Դպիր Կարապետ Համշինցիի 1493ին գրած յիշատակարանէն հետեւցնելով եւ ոչ թէ յանձնումին անմիջականօրէն ժամանակակից աղբիւրի մը վրայ հիմնուելով է որ Սուլու Մանաստըրի Հայոց յանձնումը վերագրած է Ֆաթիհին: Սակայն, այս վկայութիւնը հաղորդելէ անմիջապէս ետք կ՚աւելցնէ. «Զոր էառ ի յունաց ազգէն Սիւլէյմանն առաջին, եւ ետ ազգին Հայոց»: (էջ 20): Սարգիս Դպիր այս երկու հակասական տեղեկութիւնները լուսաբանելու փորձ մը իսկ չէ ըրած: Արդեօք Սարգիս Դպիր այս տեղեկութիւնը քաղած է Երեմիա Չելեպիէ՞ն թէ ընդմիջարկութիւն մըն է իր ինքնագիրը ընդօրինակողէն:

Նոյն տեղեկութիւնը կը գտնուի նաեւ Հ. Ղուկաս Ինճիճեանի քով (Աշխարհագրութիւն..., Ե. 1804, էջ 131, հաւանաբար Երեմիա Չելեպիի ձեռագիրէն քաղելով:

Բացայայտ է որ 17րդ դարուն իսկ Կ.

---

[14] Ձեռագիր Նուպարեան Մատենադարանի, Թ. 181, էջ 20: — Հաւանականաբար նոյն ձեռագիրն է որ, Նիկողոս Հովուեանի վկայութեամբ, ՋԽԲ (1493) թուին գրուած էր Սուլու Մանաստըր (Հրանտ Ասատուր, Ընդարձակ Օրացոյց Ազգային Հիւանդանոցի 1901, էջ 82): Այս ձեռագիրը, որ կը պատկանէր Յովհաննէս ա. ք. Մկրեանի, այժմ կը գտնուի Անթիլիասի Ձեռագրատունը:

*Պոլսոյ մէջ գոյութիւն ունէր աւանդութիւն մը, որուն համաձայն Սուլու Մանաստըրի հայկական* պատրիարքարանը 16*րդ դարուն սուլթան Սիւլէյման Գանունիի կողմէ նուիրուած էր Հայերուն:*

*Փասիֆաթիւէն առաջ, ուրիշ յոյն հեղինակ մը, որուն գործը Ֆրանսերէնի թարգմանուած է իբրեւ հեղինակ «Հնագէտ եւ Բանասէր» մը ցոյց տալով (իրականութեան մէջ Պոլսոյ օրթոտոքս պատրիարք Կոստանդիոս) աւանդութեան երկրորդ տարբերակ մը ներկայացուցած է:*

*Կոստանդիոս պատրիարք կ'ըսէ թէ* «ուրիշ եկեղեցի մը, որ Կ. Պոլսոյ գրաւումէն ետք Յոյներուն ձեռքը մնացած էր, աղիտաբեր պարագայի մը հետեւանքով հայկական եկեղեցի մը եղաւ եւ կը կոչուի Սուլու Մանասթըր»: *Եւ այս «աղիտաբեր պարագան» կը պարզէ հետեւեալ ծանօթագրութեան մէջ.»* 1643*ին*, սուլթան Իպրահիմի օրով, գէր հայ կին մը իր հրապոյրներուն համար կայսերական հարեմը ընդունուեցաւ. եւ այն կարճ ժամանակին միջոցին զոր անցուց հարեմին մէջ... այնքան իշխանութեան տիրացաւ որ իրեն յատկացուեցան ոչ միայն Դամասկոսի բոլոր եկամուտները այլ եւ իր հայ ազգակիցներուն նուիրել տուաւ Պերիպլեպտոսի այս փառաւոր եկեղեցին Յոյներէն գրաւել տալով [15]»:

---

15 *Constantiniade ou Description de Constantinople ancienne et moderne.* Composée par un Philo-

Սուլթան Իպրահիմ գահ բարձրացաւ 1640ին եւ գահընկէց եղաւ 8 օգոստոս 1648ին: Գէր Հայուհիին խնդրանքը գոհացում գտած պիտի ըլլար, ուրեմն, 1643ի եւ 1648ի մինչեւ, իսկ այս վեցամեայ շրջանէն առաջ մենաստանը գտնուած պիտի ըլլար Յոյներուն ձեռքը:

Երեք հայ եւ երկու յոյն հեղինակներուն հաղորդած տեղեկութիւնները բացարձակապէս անհամապատասխան են իրականութեան: Ոմանք, ինչպէս Գ. Հնասէր[16] խորհած եւ նոյն իսկ հաւատալի համարած են որ Սուլու Մանասթըրը Հայերուն յանձնուելէ ետք Յոյները յաջողած են զայն ետ առնել եւ այս՝ քանի մը անգամ մինչեւ որ սուլթան Իպրահիմի օրով վերջնականապէս Հայերուն սեպհականութիւնը եղած է:

Թէ 16րդ դարուն Սուլու Մանասթըրը հայկական կեդրոն մըն էր եւ Հայոց պատրիարքարանը՝ կը հաստատուի ժամանակակից բազմաթիւ վկայութիւններով:

---

logue et Archéologue du grec par M. R. Constantinople. 1846, p. 116-117 et note 1.

Այս սխալ տեղեկութիւնը կրկնած են R. Janin, *La Géographie ecclésiastique de l'Empire byzantin.* Première partie. III: Les Eglises et les monastères, 1953, p. 228; Vl. Mirmiroğlu, *Dukas Tarihi,* 1956, s. 25, n. 1; Mamboury, *Constantinople,* p. 244.

[16] Կոչնակ. 21 մայիս 1932: — Փափաթիլի գիրքը կը թուի անծանօթ մնացած ըլլայ ամէն անոնց որ Սուլու Մանասթըրի մասին գրած են:

1526ին մարհասա Գրիգոր Սուլու Մանասթըրէն կը դիմէ սուլթան Սիւլէյմանի[17], 1543ին Աստուածատուր պատրիարք հոն օրինակել կու տայ Ձեռնադրութեան գիրք մը (Յիշատակարան 8), 1544ին Զաքարիա Գնունի հոն կ'օրինակէ Վարք Աղեքսանդրին (Յիշատակարան 14[18]), 1546–1561ի միջեւ (տես ծան. 10) հոն կ'ապրի Ստեփանոս պատրիարք, 31 մայիս 1576ին հոն կ'այցելէ Հռոմէական Սուրբ Կայսրութեան (Աւստրիա-Գերմանիա) Կ. Պոլսոյ դեսպանատան երէց Ստեֆան Կերլախ, եւ 1578ի եւ 1581ի միջեւ՝ անոր յաջորդը Սալոմոն Շվայկկըր[19], եւ 1593էն առաջ կը յիշուի իբրեւ Հայոց վանքը[20]:

17րդ դարու հայ եւ եւրոպացի ուղեգիրներ կը վկայեն թէ Սուլու Մանասթըր Հայոց պատրիարքարանն էր 1608ին[21], 1612–

---

17 Հայկ Պէրպէրեան, «Սեպհականութեան վէճ մը Սուլու Մանասթըրի վերաբերեալ» (Հանդէս Ամսօրեայ, 1962, էջ 723–727):

18 Ն. Ակինեան, Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց, էջ 7–8:

19 Denys Guillaume, "L'Eglise arménienne et les théologiens protestants du 16ème siècle„ (*Revue des Etudes arméniennes,* N. S., I, [1964], P. 253—297).

20 Leunclavius, *Pandectes historiae turcicae* (In *Annales Sultanorum Osmanidarum*. Editio altera, Francoford, MDXCVI, c. 51). Լէոնգլավիուս մեռած է 1593ին:

21 Սիմէոն դպիր լեհացի, Ուղեգրութիւն, էջ 21–22:

*ին*[22], 1622*ին*[23], 1630*ի եւ* 1633*ի միջեւ*[24] *եւ* 1640*ին*[25]*: Անհեթեթ պիտի ըլլար ենթադրել թէ քանի մը տարին անգամ մը Սուլու Մանաստըր, գնդակի պէս, ձեռքէ ձեռք անցած է*[26]:

*Ուշագրաւ է, սակայն, որ սուլթան Սիւլեյման Գանունիի վերագրուած է Սուլու Մանաստըրի յանձնումը Հայերուն:* 17*րդ դարու եւրոպացի ուղեգիր մը արձանագրած է այս սուլթանին Սուլու Մանաստըրի այցելութեանց աւանդութիւնը:* «Հայերը կը պատմեն թէ, *կը գրէ*, սուլթան Սիւլեյման շատ կը հետաքրքրուէր (*Սուլու Մանաստըրի սրահին մէջ*) նկարուած պատկերներով, եւ յաճախ կ'այցելէր զանոնք դիտելու համար»: *Այս այցելութիւնները անտարակոյս փաստ մը չեն կրնար կազմել թէ իրապէս սուլթան Սիւլեյմանի շնորհն էր Սուլու Մանաստըր: Սակայն, նկատելով որ սուլթան Սիւլեյմանի օրով է որ Կ. Պոլսոյ Հայ եկեղեցական պետը առաջին անգամ*

---

22 *Relations inédites des missions de la Compagnie de Jésus à Constantinople et dans les pays du Levant au XVIIe siècle* publiées par le P. Auguste Carayon. Poitiers et Paris, 1864, p. 107.

23 [Pacifique de Provins]. *Relation du voyage de Perse*. Paris, 1631, p. 32-33.

24 *Voyage du sieur de Stochove faicts es années 1630, 1631, 1632, 1633*. Bruxelles, 1645, p. 59.

25 *Les voyage (sic) du sieur du Loir...* Paris, 1654, p. 61.

26 Stochove, *ibid.*, p. 59.

գործած է պատրիարք տիտղոսը, անհաւանական չէ ենթադրել թէ այդ այցելութեանց ընթացքին է որ Հայերը խնդրած ըլլան եւ սուլթանը, համակրած ըլլալով Հայերուն, արտօնած ըլլայ պատրիարք տիտղոսին կիրարկումը։ Սուլու Մանասթըր պատրիարքարան եղած ըլլալով սուլթան Սիւլէյմանի շնորհիւ, քանի մը տասնեակ տարի ետք դիւրաւ կրնային չփոթուիլ պատրիարքական պաշտօնը եւ պատրիարքական պաշտօնատեղին։

11. Այն քանի մը ձեռագրական յիշատակարաններուն մէջ, որ գրուած են Մեհմետ Բ. Ֆաթիհի օրով (1452–1481) եւ հասած են մեզի, չէ ըսուած թէ Ֆաթիհ է որ Սուլու Մանասթըր Հայերուն շնորհած է, սակայն այս պարագան կը հաստատուի թէ՝ մեզի հասած յիշատակարաններուն մեկնութեամբ եւ թէ անուղղակի տրուած տեղեկութիւններով։

Ֆաթիհի օրով Կ. Պոլիս գրուած յիշատակարանները, որոնց մէջ գրութեան վայրը յիշուած է, վեց են (Յիշատակարան 1, 4, 6, 6 կրկին, 7, 11։

1459ի յիշատակարանը (Թ. 1) գրուած է Ս. Ստեփանոսի վանքը, որուն վայրը ծանօթ չէ։

1474ին եւ 1478ին չորս ձեռագիր օրինակուած են Ս. Նիկողայոս եկեղեցին (Յիշատակարան 4, 6, 6 կրկին, 7), բայց հաւանական է որ 1478ին ընդօրինակուած միւս

ձեռագիրն ալ նոյն եկեղեցին գրուած ըլլայ (Յիշատակարան 5)։

1480ին ձեռագիր մը ընդօրինակուած է Զարխափան Ս. Աստուածածին եկեղեցին։ (Յիշատակարան 11)։

15րդ դարուն երկրորդ կէսին Կ. Պոլսոյ մէջ Ս. Աստուածածին անուն հայկական եկեղեցիի մը միակ յիշատակութիւնն է այս։ Այս պարագան մղած է Վ. Յ. Թորգոմեանը անհիմն ենթադրութիւններու եւ անտրամաբանական հետեւութիւններու [27]։ 1495ին գրուած յիշատակարանի մը մէջ (Յիշատակարան 15) որոշապէս ըսուած է թէ Ս. Աստուածածինը կը կոչուի Սուլու Մանասթըր։ Ուէ՛ տարակոյս չի մնար այլ եւս թէ Զարխափան Ս. Աստուածածինը Սուլու Մանասթըրն է։

Այս բոլոր աղբիւրները կը հաստատեն ուրեմն թէ 1461 եւ 1480ի միջեւ, առ այժմ անծանօթ թուականի մը, Ֆաթիհ Հայերուն շնորհած է Սուլու Մանասթըրը, որ մինչեւ այսօր, առանց ընդմիջման, մնացած է Հայոց սեփականութիւնը։

Ֆաթիհի կողմէ Հայերուն շնորհուած եկեղեցիներուն մասին գոյութիւն ունի ուրիշ աղբիւր մըն ալ։ Մինչեւ 1915, Սեբաստիոյ Ս. Նշանի վանքը պահուած ձեռագրի

---

[27] Վ. Յ. Թորգոմեան, անդ, էջ 227 եւ 229։ — Սիմէոն լեհացի 1604ին Պոլսոյ մէջ կը յիշէ հինգ եկեղեցի, որոնց մէկը կը կոչուէր Ս. Աստուածածին (Ուղեգրութիւն, էջ 7)։

*մը յիշատակարանին հեղինակը, որ Ֆա- թիհի կենդանութեանը Պոլիս ապրած ըլլալ կը թուի, կը վկայէ թէ* «փատիշահն ամե- նայն քաղաքացոց եկեղեցեաց շնորհեաց շէն եւ փարթամ եւ մեծ...»[28]։ *Ֆաթիհի օրով Հայոց շնորհուած եկեղեցիներուն ամէնէն* «*փարթամը, մեծը եւ շէնը*» *Սուլու Մանաս- թըրը կրնար ըլլալ, որ Այա Սոֆիայէն ետք ամէնէն փառաւոր եկեղեցին էր։*

*Անուղղակի վկայութիւն մըն է նաեւ մարհասա Գրիգորի դիմումը սուլթան Սիւ- լէյման Գանունիի 16րդ դարուն սկիզբները՝ 1526ին։ Գրիգոր կ՚ըսէ իր դիմումնագիրին մէջ թէ մենաստանին շրջակայ խարխուլ տաղաւարները* «հինէն ի վեր» *անոր սեփ- հականութիւնն էին։* «Հինէն ի վեր» *բառե- րը ժամանակի անորոշ տեւողութիւն մը եւ ոչ թէ տարիներու որոշ թիւ մը ցոյց կու տան, սակայն 1526ին առ նուազն պէտք է նշանակած ըլլան 50–60 տարի։ Այս տաղա- ւարները բստ երեւոյթին Հայերը շինած կամ գնած էին Սուլու Մանասթըրի տիրելէ ետք։*

12. *Մինչեւ այստեղ ներկայացուած փաստերու հերքելու անզօր է 1479ին Գա- րամանէն (Լարենտէ) Պոլիս փոխադրուած Մարտիրոս աբեղային այն տեղեկութիւնը թէ Ֆաթիհ* «վասն պատրիարգութեան հա- մար» *Պոլիս բերել տուած էր Մաթէոս*

---

28 *Թ. Գուշակեան*, Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Նշանի վանուց ի Սեբաստիա, *Թ.* 72. *էջ* 54։

*Սեբաստացին եւ Աբրահամ Տրապիզոնցին, որոնք, նախընտրելով միայնակեցութիւնը աշխարհիկ փառքէն, յանձն չէին առած այդ պաշտօնը: (Յիշատակարան* 11)*:*

*Մարտիրոս, որ նոյն իսկ հայերէն ուղղագրութեան քաջածանօթ չէ, զարմանալի չէ որ պաշտօնական տիտղոսներու կիրարկումին մասին ալ ճշգրիտ գաղափար մը ունեցած չըլլայ: Քանի որ Յոյներուն կրօնական պետը պատրիարք կը կոչուի, խորհած պէտք է ըլլալ, Հայերուն կրօնական պետն ալ նոյն տիտղոսը կրելու իրաւունք ունի:*

*Այսպէս է նաեւ որ Կիլիկիոյ Լեւոն Ա.ի թագաւոր օծումէն եւ պաշտօնապէս թագաւոր տիտղոսը ստանալէ առաջ, գրիչ մը զայն թագաւոր յորջորջած է*[29]*, եւ Մատթէոս Ուռհայեցի կը շարունակէ Վասպուրականի Սենեքերիմը Սեբաստիա հաստատուելէն ետք թագաւոր կոչել երբ հոն պաշտօնապէս թագաւոր չէր, եւ անոր որդին Դաւիթն ալ նմանապէս թագաւոր կ՝անուանէ երբ ոչ իսկ նախկին թագաւոր էր: Պաշտօնական տիտղոսներու մասին նոյն ազատութիւնը կը շարունակուի մինչեւ այսօր ուր «փրոֆեսոր» կը կոչուին կամ կը ստորագրեն մարդիկ որոնք բացարձակապէս այս տիտղոսը կրելու իրաւունքը չունին:*

13. *Վերջացնելէ առաջ, աւելորդ չէ*

---

29 Գ. *Յովսէփեան*, Յիշատակարանք ձեռագրաց, Ա. *էջ* 581–582, *թ.* 261:

մատնանշել այն անհիմն տեսութիւնը թէ Ֆաթիհի եւ Հայոց միջեւ դաշինք մը կընքուած է։ Այս տեսութեան հեղինակը այնքան անծանօթ եղած է բիւզանդական որքան օսմանեան պատմութեան[30]։

Բոլորովին անհիմն է նաեւ այն տեղեկութիւնը թէ Ֆաթիհ Յովակիմի տուած ֆերմանով կայսրութեան բոլոր ոչ-օրթոտոքս բայաները ենթարկած է Հայոց պատրիարքին իշխանութեան[31]։

---

30 Télémaque Tutundjian, *Du Pacte politique entre l'Etat ottoman et les nations non-musulmanes de la Turquie* (Thèse de doctorat, Lausanne, 1904).

31 F. van den Steen de Jehay. *De la situation légale des sujets ottomans non-musulmans.* Bruxelles, 1906, p. 62.

ՅԱԽԵԼՈՒԱԾ

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

1

1459

ՈՒՍՈՒՄՆ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

Երեւան 8871

*Գրեցաւ թագօրական բժշկարանս ի թվականութեանն Հայոց ՋԸ* (1459) *ամին եւ ի նոյեմբերի ամսուն ի Գ.* (3), *օրն շաբաթ, եւ ի քաղաքին Կոստընդինուպաւլի, եւ ի յառ ոտն վանիցն սուրբ Ստեփաննոսու, եւ ի կաթողիկոսութեանն Հայոց տէր Գրիգորոյ, եւ* ի հայրապետութեանն տէր Մարտիրոսին *Կոստանտինուպաւլու վիճակին եւ ի պարոնութեանն Մուհամատ խանին...:*

*Լ. Խաչիկեան*, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, *Բ*, *էջ* 115:

## 2

## 1469

## ՕԳՈՒՏ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
## ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

Օգուտ բժշկութեան, 1940 թ․, էջ 5–8։ Երեւան, 414

*Թարգմանեցաւ պատուական բժշկարանըս ի մայրաքաղաքն ի Ըռումիայ, որ Թարգմանի Ֆիլիպիայ, ի Թվականիս Հայոց ՋԺԸ* (1469) *ամին, ի դեկտեմբերի ԻԵ․* (25), *որ ծնունդ էր Փրկչին այլազգաց հաշուովն, ի կաթուղիկոսութեան տէր Ըռստակէսի, եւ* եպիսկոպոսութեան *տէր Յովակիմին*։

*Լ․ Խաչիկեան*, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, Բ, *էջ* 286։ *Երեւանի* 414 *ձեռագրում* «*ԻԶ* 26»։

## 3

## 1469

## ՕԳՈՒՏ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

(Ամիրտովլաթին) Ղալաթիա, 32

*Թարքմանեցաւ պատուական բժշկարանըս ի Թուականիս Հայոց ՋԺԸ* (1469) *ամին, դեկտեմբերի ԻԶ* (26), *որ ծնունդ էր փրկչին այլազգեաց հաշուովն, ի կաթողիկոսութեան տէր Ըռստագէսին եւ* եպիսկոպոսութեան տէր Յովակիմին․․․։

*Բաբգէն Կիւլէսէրեան*, Ցուցակ Ձեռագրաց Ղալաթիոյ Ազգային Մատենադարանի Հայոց, *էջ* 126:

4

1474

ՌԱՄԿԱԿԱՆ ԳԻՐՔ
ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

Երկրագունտ, 1884 թ., էջ 551–552

... *կաթողիկոսութեան տէր Սարգսին եւ ի Հայրապետութեան տէր* Յովակիմայ արհիեպիսկոպոսին, *ի մայրաքաղաքն ի Կոստանդինոյպոլիս, ընդ Հովանեաւ սրբոյն Նիկողայոսի սքանչելագործին, եւ ի թուականութիւնքն Հայոց ՋԻԳ* (1474) *ամին, ի մայիս ամսոյ Հռոմայեցոց ԻԶ* (26) *աւրն*...:

*Լ. Խաչիկեան*, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, *Բ*, *էջ* 357:

5

1478

ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ
ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ

Վիեննա 40

*Աւարտի սա Հինգ լեզուաւ գՀայոց թուականն ՇԻՆԷ* (1478) : *Ի ժամանակս թա–*

*գաւորութեանն Իսմայելացւոց ազգին Սարակինոսաց ի յազգէն Հագարու, ի նուաղել թագաւորութեանն Յունաց, ի մայրաքաղաքն Կոստանդինուպաւլիս, որ անխաղթ եւ անսասան կենան այն քրիստոնեայքն որ անդ էն բնակեալ. ի թագաւորութեանն սուլդան Մուհամմատ խանին, ի հայրապետութեան տեառն Սարգսի աթոռոյ սուրբ էջմիածնի, եւ* յեպիսկոպոսութեան տէր Նիկողայոսի *մայրաքաղաքին Կոստանդինուպաւլիսի: Եւ ի թուականութեանս Հայոց վերոյ գրեալ ՏԻՆԷ կարմիր գրին* (1478)...:

*Յ. Տաշեան*, Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, *էջ* 198:

## 6

## 1478

## ԱՄԻՐՏՈՎԼԱԹ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ

Ձմմառ 252

*Աւարտի սա հինգ լեզուաւ զՀայոց թուականն Տինէ* (1478). *Ի ժամանակին թագաւորութեան իսմայելացւոց ազգին Սարակինոսաց ի յազգէն Հագարու, որ նուաղեալ էր թագաւորութիւնն Յունաց, ի մայրաքաղաքն Կոստանդնուպոլիս որ անխախտ եւ*

*անսասան կենան այն քրիստոնեայքն որ ի անդ բնակեալ են : Ի Թագաւորութեանն սուլթան Մահմէտ խանին եւ կաթուղիկոս ի յէջմիածինն տէր Սարգսին, եւ* ի հայրապետութեան *ի մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս* տէր Նիկողայոսին, *եւ թուին Հայոց վերոյգրեալ Շինէ* (1478) *կարմիր գրին, եւ ի յոտն Սուրբ Նիկողայոս սքանչելագործ հայրապետին :*

*Մ. Քէչիչեան*, Ցուցակ ձեռագրաց Զըմմառի վանքի մատենադարանի, *էջ* 580 :

## 6 կրկին

*Այս յիշատակարանին հետեւեալ տարբերակը հրատարակած է Վ. Յ. Թորգոմեան*, Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ Պատմութիւն, *Ա. էջ* 280 :

*Ի Թագաւորութեանն սուլթան Մուհամմատ խանին, եւ ի կաթողիկոսութեան էջմիածնին տեառն Սարգսին եւ* ի հայրապետութեան *ի մայրաքաղաքն ի Կոստանդինուպօլիս* տէր Նիկաւլայոսին, *եւ ի թուին Հայոց ՋԻԷ* (1478), *առ դրան սրբոյն Նիկաւլայոսի սքանչելագործ հայրապետին... :*

# 7

## 1478

## ԱՄԻՐՏՈՎԼԱԹ ԱՄԱՍԻԱՑԻՈՑ ԱՆԳԻՏԱՑ ԱՆՊԷՏ

F. C. Conybeare, *A Catalogue of Armenian manuscripts in the British Museum*, p. 315.

Ի թվականութեան սուլթան Մուհամմատ խանին, եւ ի հայրապետութեան տեառն Սարգսի աթոռոյ սրբոյ Էջմիածնի, եւ յեպիսկոպոսութեան տէր Նիկողայոսի, մայրաքաղաքին կոստանտինուպաւլսի, եւ ի թուականութեանս հայոց վերոյ գրեալ չինէ կարմիր գրին՝ առ ոտն սրբոյն Նիկողոյոս սքանչելագործ հայրապետին:

Գրիչին յիշատակագրութիւնը հրատարակած է Կ. Ց. Բասմաջեան, Ամիրտովլաթի Ամասիացւոյ Անգիտաց Անպէտ, էջ Ը.

Ով սուրբ ընդերձողք յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՄարտիրոս աբեղաս որ ոսկով եւ կազմով զարդարեցի զսա. ընդ նմին եւ զպարոն Ամիրտովլաթ բժիշկն, որ արդար ընչիւք զարդ(ար)ել ետ զսա. թվ. ՋԼԹ (1490):

8

1543

## ԳԻՐՔ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

Սեպհականութիւն Կ. Կանիմեանի, Թրոյ (ԱՄՆ)

Զվերջին ստացող զսուրբ տառիս, որ Ձեռնադրութեան Գիրք կոչի, զմահդասի Մարիամս, ետու զսայ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ յամենայն յարեան մերձաւորաց իմոց, ի ձեռն Աստուածատուր վարդապետին, որ է յայժմու ժամանակին պատրիարք Կոստանդինուպաւլսի մայրաքաղաքի, զոր Աստուած զինքն հաստատուն եւ անդըրդուելի պահեսցէ մինչեւ ի խորին ծերութիւն ի վերայ գաւազանին իւրոյ․ ամէն:

Արդ աղաչեմ զձեզ, ով հանդիպողք սուրբ տառիս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զմահդասի Մարիամս եւ զայրն իմ բարեսէր զխոճայ Յովասափին եւ զորդիքն իմ զխոճայ Պաղչին եւ զհաճի Կիրակոսն եւ զամենայն արեան մերձաւորսն մեր․ ասացէք լիակատար սիրով․ լոյս փառաց Քրիստոս Որդի Աստուծոյ․ ի գալստեան քո Հայրենի փառաւք, ողորմեայ ամենայն վերագրելոցս ի սմայ եւ որք բանիւ մեզ ասասցէ, գործովք նմայ կատարէ Քրիստոս Աստուած մեր, միջնորդութեամբ մաւր իւրոյ Մարիամու եւ յամենայն սրբոց յամէն:

*Գրեցաւ սակաւ գիրս ձեռամբ Աստուածատուր պատրիարգին, ի թվին ՇՂԲ* (1543)։ *Ապրիլ ԻԱ* (21)։

9

*Գրեցաւ Գիրքս Ձեռնադրութեան թվ. ՊՁԷ* (1438)։ *Ի վայելումն* արհիեպիսկոպոսին տէր Յովակիմին *Կոստանդինուպաւլսի*։ *Զոր տէր Աստուած վայելեալ տացէ յամերամս ժամանակաց. ամէն*։

*Կատարեցաւ հրամայեալն ի քէն, ո՛վ տէր պատուական*։ *Զսակաւ գծիկս ընկալ յանպիտան Յակոբ աբեղէ տրապիզոնցոյ, իբրեւ զխէրեւէչս այրւոյն*։ *Եւ անմեղադիր լեր խոշորութեան եւ անարհեստութեան եւ սխալանաց սորա. զի կար մեր այսչափ էր. եւ մի՛ մոռանար ի մտաց քոց սուրբ ի բարի մասին զանարժանս, աղաչեմ*։

*Բ. Կիւլէսէրեան*, Հանդէս Ամսօրեայ, 1924, *էջ* 436։

## 10

## 1551

## ՍԱՂՄՈՍ

BODLEIAN LIBRARY, OXFORD

MS. Laud Or. 35

*Փառք…: որ ետ կարողութիւն ինձ, անարժան Ստեփանոս վարդապետիս, որ գրեցի զայս սաղմոսարանս ձեռամբ իմով ի լաւ եւ ընտիր աւրինակէ որ կոչի Գառնեցի: Անմեղադիր լիցուք սղալանաց եւ խոշորութեան գրիս, զի կար մեր այսչափ էր· զի ի մէջ վրդովմանց էաք, պատճառաւ տարան զմեզ Ըստըմպոլ, եւ* զպատրիարգութիւն *մեզ առին ի սուլթան Սուլէմանէն:*

C. F. Dowsett, “Stepanos I, patriarch of Constantinople and his accusers” (ՀԱ, 1961, p. 870-878).

## 11

## 1480

## ՍԱՂՄՈՍ

Նախկին սեպհականութիւն
հանգուցեալ Վ. Յ. Թորգոմեանի

*Դարձեալ, ի Թուականիս Հայոց ՋԻԸ* (1479) *սուրկուն արար խօնտքարն զՂարամանի աշխարհին զհայ ազգս. եւ զիս զանպիտան հողս զՄարտիրոս հետ բերին ի*

Կոստանդնուպօլիս առ ոտս սուրբ վարդապետին մերոյ տէր Մաթէոսի Սեբաստացոյ եւ Աբրահամ վարդապետի Տրապիզոնցոյ, որ եւ զսոքայ ալ խօնտքարն բերել էր վասն պատրիարգութեան համար, եւ սոքա ոչ առին յանձն, լաւ համարելով զմիայնակեցութիւն քան թէ փառք առնուլ ի մարդկանէ:

...Արդ գրեցաւ սա ի թվ. ՋԻԹ (1480), ի յամսեան յուլիս Ը (8), մեծահամբաւ կայսերանիստ քաղաքս Ըստամպաւլ, ի դուռն Զարխաբան սուրբ Աստուածածնիս:

Վ. Յ. Թորգոմեան, Հանդէս Ամսօրեայ, 1895, էջ 243, Լ. Խաչիկեան, ԺԵ դարի հայերէն ձեռագրերի յիշատակարաններ, Բ, էջ 440–441:

## 12

## 1488

## ԱՒԵՏԱՐԱՆ

Էջմիածին, 1963, Թ. 6, էջ 59

Զարագս ի չարիս.
Զունայնն ի բարիս,
ԶՄարտիրոս աբեղաս մեղօք իլ լիս
Զվերջին կազմող աւետարանիս,
Ով սուրբ եղբայրք յաղօթս ձեր,

*Յիշման առէք արժանիս,*
*Եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ:*

*Թվ. ՋԼէ* (1488) *Յուլիս ԻԱ* (21) *կազմեցաւ:*

13

1495

ԱՒԵՏԱՐԱՆ

Էջմիածին 194

*...Նուաստ ծառայս ծառայից Աստուծոյ՝ Կարապետ եպիսկոպոս Կաֆայեցի... այլ ոչինչ ունելով տալ Տեառն Աստուծոյ իմոյ զսուրբ աւետարանս որ յիմ հալալ արդեանց գնեցի եւ զաւետարանիչքն նկարել տուի եւ Նոր կապել տուի եւ դրի յիշատակ իմ հոգույս եւ իմ ծնողացն ի սուրբ Գէորգ տաճարիս որ կոչի Սուլու մանաստիր...: Թվին ՋԽԴ* (1495) *յուլիս Թ* (9) *գրեցաւ յիշատակարանս ձեռամբ Աստուր աբեղայի Կաֆեցոյ:*

Էջմիածին, 1963, *Թիւ* 6, *էջ* 60:

(*Այս Աւետարանը կը պատկանէր Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցիին մինչեւ* 1942: *Այդ Թուականէն ետք մաս կազմած է Էջմիածնի ձեռագիրներուն: Երեք յիշատակարաններն ալ առաջին անգամ հրատարակած է Կ. Յ. Բասմաջեան, Կ. Պոլսոյ* Ծաղիկ *շա-*

*բաժաժերժին* 1891*ի Թ*. 25*ին մէջ, էջ* 4: 12 *եւ* 14 *Թիւ յիշատակարաններուն մէջ Հայկա-կան ՋԽԴ եւ ՋԼԷ Թուականները փոխադար-ձաբար լուծուած են* 1496 *եւ* 1489, *ինչ որ սխալ է, բայց նոյն սխալը չէ կատարուած Թ*. 13 *յիշատակարանին մէջ*):

14

1544

ՎԱՐՔ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

Ն. Ակինեան, Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց, էջ 7–8

*...Յիշեցէք ի միտս բարիս եւ ի Հայ-ցուածս պատկանաւորս զոէր Աստուածա-տուր տեսուչս: Եւ զիս զմեռեալս մեղաւք զԶաքարիայ եպիսկոպոս զծող եւ ծաղկող այսմ տառիս: Գրեցաւ սա ի Թվիս Հայոց Ջ. Ղ. Գ.* (1544) *. ի Սուլի մանաստիրս ի բռնա-կալութեան Սուլտան Սուլէմանին...*:

15

1495

ԱՒԵՏԱՐԱՆ

Հայաստանեայց եկեղեցի

Հատոր 9, 1947, էջ 305–306

*Փառք... Յամի Թուաբերութեանս մե-րոյ սէռի ՋԽԴ* (1495) *կատարեցաւ սուրբ*

աւետարանս աստուածախօս մատեանս... Ձեռամբ մեղսասէր Աբրահամ աբեղայի...: Կատարեցաւ սուրբ աւետարանս ի մայրաքաղաքս որ կոչի Կոստանդինուպաւլիս, ի դուռն սուրբ Աստուածածին որ այժմ կոչի Սուլումանաստիր, ի Հայրապետութեան տեառն Սարգսի եւ յարի եպիսկոպոսութեան տէր Կարապետի Կաֆայեցւոյ:

(Հրատարակիչն է Յարութիւն Քիւրտեան):

# ԿԱՐԵՒՈՐ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 2 | 12 | դասաւորումին | հաւաստումին |
| 11 | 11 | ուսխալ | ուսեալ |
| 27 | 2 ծան. | պէտք | պէտք է |
| 38 | 8 | դատին | տարին |
| 40 | 23 | Եինանչ | Երնանչ |
| | 43 | վերջին | վերջինը |
| 42 | 20 | ԱգՕմարայի | Ագսարայի |
| 45 | 20 | ջնջել ամբողջ տողը | |
| 47 | 11—12 | մանրամասնութիւններ | հաւաստումները |

Կիտադրութեան վրիպակները չեն ուղղուած

# ՑԱՆԿ

